1916 № 36.—Սեպտեմբերի 4 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 *ռուբլի*, կէս տարուան 2 *ր.* 50 *կ.*: *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝* տարեկան 3 *ր.*, կէս տարուան 2 *ր.*: *Արտասահման՝* տարեկան 5 *ր.*, կէս տարուան 3 *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտաարադեան հրապար.* № 7. Հեռախօս № 29.

*Պոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбавaберъ". Tiflise, Rédaction du Journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* 10 *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից: Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՀԱՄՈԶՄՈ՞ՒՆՔ Է, ԹԷ՞ ՉԱՐԱՄՏՈՒԹԻՒՆ:

*Թիֆլիսում հրատարակուող* „Кавказ. Слово" *օրաթերթի էջերում մի դիմակաւոր անձնաւորութիւն՝ «Մագիստրանտ» կեղծ անունով, և նոյն թերթի խմբագիր պ. Սիմէօնովը սկսել են կատաղի արշաւանք տաճկահայերի պատմական և իրաւացի ազատագրման ձգտման դէմ—այն ձգտման և տենչի դէմ, որի համար ամբողջ հայութիւնը մինչև օրս տուել է անթիւ զոհեր և թափել ծովարիւն:*

*Այս անարժան, անտեղի և անժամանակ արշաւանքը յարոյց հայ մամուլի և հայ ժողովուրդի բոլոր խաւերի բուռն և արդարացի զայրոյթը:*

*Մեր թերթը—«Համբաւաբերն» էլ միացրեց իր ձայնը ընդհանուրի բողոքին:*

*Դժգոհութիւնը հասարակութեան մէջ սաստկանում է աւելի շնորհիւ այն հանգամանքի, որ թերթը հրատարակւում է մի խումբ դրամատէր հայերի միջոցներով, համարւում է առաջադիմական, հետևապէս պարտաւոր է իր յարուցած հարցերի մասին իրազեկ լինել և ունենալ գէթ սովորական բարեխղճութիւն:*

*Սակայն այս տարրական պահանջներից ոչ մէկը ոչ էլ միւսը ի նկատի չեն առնուած:*

*«Մագիստրանտի» յօդուածը գրուած է մի այնպիսի յանդուգն ոճով և անզուսպ տոնով, որ նոյն իսկ գրութեան ձեն ու եղանակը բաւական են, որ ընթերցողը հենց սկզբից ըմբռնի, որ գրողը իր յարուցած խնդրի վերաբերմամբ բարեմիտ չէ, որ նա կաշկանդուած է կանխակալ կարծիքով, ունենալով գուցէ ինչ-ինչ ուրիշ նպատակներ:*

*Մի՞թէ յայտնի չեն մեզ թէ պատմութիւնից և թէ ժամանակակից կեանքից դէպքեր, երբ դուրս են գալիս անհատներ, որոնք իրենց սեփական շահերի համար, նոյն իսկ իրենց պաշտօնական կարիքերի համար, սրբապղծում են, առանց խղճի խայթոցի, առանց ամօթի զգացմունքի, մի ազգի, մի ամբողջ ժողովուրդի լաւագոյն զգացմունքներն ու յոյսերը, և գործում են նրա շահերի դէմ:*

*Զարաբաստիկ Մագիստրանտը իր տխրահռչակ յօդուածը սկսում է այսպէս.*

«Ինքնավարութիւնը Տաճկահայաստանում մեռեալ մարմին է, որի ներս հայ հասարակութեան ազգային-արմատական շրջանները շարունակում են փաչ գալ, չունենալով բաւականի վճռողականութիւն եւ ոյժ, որ նրան յանձնեն հողին եւ վրան դնեն խաչ» *և նոյն ոգով շարունակում է մինչև վերջը:*

*Բայց նա իր միտքը չի հիմնաւորում համոզեցուցիչ ու դրական փաստերով, չի հիմնաւորում և առողջ տրամաբանութեամբ։*

*Իսկ նրա անհիմն բացականչութիւններին, թէ Տաճկահայաստանում հայ չէ մնացել և երկիրը մնացել է մահմեդականներին — ոչ ոք չի հաւատալ, ոչ ոք նշանակութիւն չի տալ։ Եթէ հայերի մի մասը կոտորուել է, միւսը գաղթել է իր ծննդավայրերից ժամանակաւորապէս, չէ՞ որ նոյն վիճակին պատերազմի հարուածների շնորհիւ ենթարկուել են որոշ չափով և մահմեդականները։*

*Ինչ վերաբերում է պ. Սիմէօնովին — պէտք է ասել, որ նրա գրուածքներն էլ զուրկ են փաստային հիմնաւորումից և մտաւոր կարողութիւնից, բայց լի են անբարեմիտ ակնարկներով և անհեթեթ եզրակացութիւններով։*

*Արդ՝ հարց է ծագում, որ երբ մեր դէմ կանգնած են այնպիսի անձնաւորութիւններ, որոնք միջոցների մէջ խտրութիւն չեն գտնում, որոնց գրիչների գոհարիկները պրովոկացիայի բնոյթ ունեն և արժանի են լոյս տեսնելու մի այնպիսի օրգանում, ինչպէս է յայտնի* „Русское Знамя“ *— կարելի՞ է դրանց հետ բանակռուի, վէճի մէջ մտնել։*

*Հայ մամուլը միանգամայն իրաւունք ունի երեսը դարձնել այդ տեսակ ընդդիմախօսներից և գրողներից։ Հայկական հարցը ունի իր մեծ պատմութիւնը. նա վաղուց դարձել է միջազգային, քննուել ու ծեծուել է թէ մամուլում և թէ դիւանագիտական շրջաններում. այժմ մնում է, որ նա ստանայ իր վերջնական լուծումն մօտ ապագայում կայանալիք պետութիւնների վեհաժողովում.*

*Իսկ ներկայումս, երբ կատարւում է արիւնահեղ պատերազմը, երբ բոլորն էլ պարտաւոր են զբաղուել և զբաղւում են պատերազմական և պատերազմի հետ կապուած գործերով ու հոգսերով, միանգամայն անտեղի է և անժամանակ յարուցանել մի այնպիսի ծանր խնդիր, ինչպէս է Տաճկահայաստանի և հայ ազգի ապագայ քաղաքական վիճակի խնդիրը։*

*Երբ պատերազմը կը վերջանայ, երբ կը կազմուի վեհաժողովը, երբ հարց կը յարուցանուի փոքր և ճնշուած քրիստոնեայ ազգերի ազատագրական մասին մահմեդական ծանր լծից, այն ժամանակ սեղանի վրայ կը դրուի և Հայկական խնդիրը։*

*Թէ ինչ լուծումն կը ստանայ խնդիրը — դժուար է գուշակել. այդ կախուած կը լինի պատերազմի հետեւանքներից, կախուած կը լինի Ռուսաստանի և նրա դաշնակից պետութիւնների բարեհայեցողութիւնից և իրերի քաղաքական դասաւորումից։*

*Ցամենայն դէպս տաճկահայերը կը մնան հաւատարիմ իրենց ազգային իդէալին և վաղուան յոյսերով կը սպասեն իրենց սրբազան իղձի իրագործման։*

*Իսկ զանազան Մազխարաններին և Սիմէօնովներին նրանք կասեն.*

«Հեռո՛ւ ձեր ձեռները մեր սրբութիւնից։

Ձեր մէջ խօսում է ոչ թէ համոզմունքը, այլ չարամտութիւնը»։

*Ս. Յ.*

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Կովկասեան ճակատում այս շաբաթ կռիւները կենտրոնացած էին գրեթէ բացառապէս Օղնուտի շրջանում։ Թիւրքերը կատաղի փորձեր են անում պատռելու ռուսների գիծը, որպէսզի Տիգրանակերտի զօրքերը կարողանան դուրս բերել մի թևով Կարնի, իսկ միւս թևով Մանազկերտի դէմ՝ շրջափակելով Մուշը հիւսիսից։ Ի նկատի ունենալով պաշտօնական հաղորդագրութիւնների լակոնական տոնը այդ կռիւների յամառութեան մասին և թիւրք գերիների այն ցուցմունքը, թէ Օղնուտի մօտ ընկել են իրենց 2-դ զօրամարմնի (կորպուս) և մի զօրաբաժնի (դիւիզիա) հրամանատարները՝ պէտք է ենթադրել, որ այս շաբթուայ ճակատամարտը խիստ արիւնահեղ է եղել։ Կռուի ելքը դեռ պարզ չէ։ Ռուսները մինչև այժմ գերել են 4 սպայ և 240 զինուոր։ Նրանց պատերազմական աւարն են կազմում մի քանի թնդանօթ և մի գնդացիր։*

*Պարսկական ճակատում պատերազմական գործողութիւններ են տեղի ունենում միայն Մոսուլի գծի վրայ։ Ռուսներն այստեղ թշնամուն Սակկըզի մօտերքից քշել են մինչև Բանա։ Քիրմանշ-Ղազուինի գծից տեղեկութիւններ չկան։*

*Միջագետքի ճակատի մասին այս օրերս անգլիացոց գլխաւոր սպայակոյտը (շտաբը) մի հաղորդագրութիւն հրատարակեց, որից երևում է, որ ամբողջ օգոստոս ամսուայ ընթացքում այստեղ ոչ մի նշանակալից բան չի պատահել։*

## ԱՒՍՏՐՈՒԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Ռուսական ճակատում թէև այս շաբաթ ուժեղ գործողութիւններ չեղան, բայց և այնպէս բաւական կենդանութիւն էր տիրում։ Հիւսիսային գծերի վրայ թշնամին ընդհանրապէս հետախուզութիւններով էր զբաղուած, որ մի քանի օդամարտի առիթ տուեց միայն։ Դվինսկի մօտ թշնամու հետևակազօրը փորձեր էր անում յետ խլելու այն խրամատները, որ անցեալ շաբաթ գրաւել էին ռուսները, բայց անյաջող։ Կովելի գծի վրայ և Գալիչի շրջակայքում թշնամին աւելի եռանդ էր ցոյց տալիս յարձակումներ կատարելու գործում, թէև դարձեալ առանց զգալի յաջողութեան։ Վերջին վայրի կռիւներում ռուսների դէմ գործում էին նաև թիւրքերը։ Կովելից հարաւ՝ Զոլոտայա Լիպայից արևմուտք և անտառային Կարպատներում ռուսների առաջխաղացութիւնը, թէև դանդաղ, բայց շարունակւում է։ Թշնամին այստեղ խիստ յամառ դիմադրութիւն է ցոյց տալիս. տեղ-տեղ նա կատաղի հակայարձակումներ է գործում, բայց և այնպէս ստիպուած է նահանջել։ Այս շաբաթ նա գերի է տուել ռուսներին մօտ 1,400 զինուոր և 20-ի չափ սպայ։ Ռուսական ճակատի մանաւանդ հիւսիսային գծերի գործողութիւնները նախապատրաստական աշխատանքների բնոյթ են կրում։*

*Անգլօ-ֆրանսական ճակատում կռիւների ծանրութեան կենտրոնը նախորդ շաբաթուայ պէս դարձեալ ընկած է Սոմի հիւսիսային և հարաւային ափերին։ Առանձնապէս ուժեղ կռիւ են ունենում ֆրանսացիք այս շաբաթ Պերրոնի շրջակայքում, ուր նրանք հինգ կիլոմետրաչափ ճակատի վրայ յարձակման դիմելով՝ մի հարուածով առնում են մի քանի կարգ ամրութիւններ և գրաւում Բուշևեն գիւղը։ Թշնամուց մօտ 1570 գերի են առնում։ Սոմի ափերին այս շաբաթ ֆրանսացիների ձեռք գցած գերիների ընդհ. թիւը հասնում է 2,000-ի։*

*Անգլիական գծերի վրայ առանձնապէս ուժեղ կռիւներ տեղի [illegible]ին Ֆուրօ-Լիզ անտառների միջև։ Օգոստ. 28-ին 6,000 եարդ ճակատով յարձակման դիմելով՝ գրաւում են Ժենշի գիւղը՝ Թշնամու բոլոր ճիգը՝ յետ խլելու այս գիւղը — ապարդիւն է անց-*

նում։ Իզուր է անցնում և ինչ-որ վառուող հեղուկի գործադրութիւնը, որից գերմանացիք մեծ չափերով օգտւում էին այս կռիւների ժամանակ։ Անգլիացիք իրենց գծերի վրայ այս շաբաթ գերել են մօտ 550 մարդ։

Վերդէնի տակ կռիւներ են տեղի ունենում Վօ-Շապետր գծի վրայ, Լըշէնուա, Տիօմոն և Ֆլերիի ամրութիւնների շուրջը։ Ֆրանսացիք դանդաղ, բայց հաստատուն քայլերով առաջ են շարժւում դէպի Վօ-Դուամօն գիծը։ Վերդէնի տակ նրանց ձեռքն ընկած գերիների թիւն է 374 զինուոր և 10 սպայ։

Անգլօ-ֆրանսական ճակատի վրայ չափազանց ուժեղացել են օդային գործողութիւնները։ Օգոստ. 27-ին միայն ֆրանսական գծերի վրայ 40 օդամարտ է տեղի ունեցել։ Դաշնակիցներն ամեն օր օդային տորմիղներով ռմբակոծում են թշնամու դիրքերը և մանաւանդ թիկունքի հաստատութիւնները։ Օգոստ. 30-ին ֆրանսական մի տորմիղ միայն Շոնի կայարանների վրայ 480 ռումբ է գցել։

Ռումանացոց ճակատում թշնամու նահանջը հիւսիսային և հիւսիս-արեւելեան գծերի վրայ շարունակւում է։ Գործողութիւններն այս շաբաթ գլխաւորապէս Գերմանշտադտի ուղղութեամբ էին կատարւում։ Մարոշի և Օլտի հովիտներում աւստրուհունգարները շարունակ նահանջում են. Ռումինները այս շաբաթ գրաւել են Տուպլիցա, Սանիլա, Դելնէ, Ժուրժէն, Սան Միքլոու և մի քանի այլ գիւղեր։ Նրանց գերած թշնամու թիւն է մօտ 800 հոգի, իսկ պատերազմական աւարը՝ մի քանի թնդանօթ։

### ԲԱԼՔԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Սալոնիկի ճակատում գործողութիւնները թոյլ են առաջ գնում։ Այս շաբաթ կռիւներ կային գրեթէ միայն անգլիական գծի վրայ՝ Ստրումայի ափերին։ Բրիտանացոց հետեւակազօրը անցնելով գետը խլել է բուլղարներից մի քանի ամրութիւն։ Ուրիշ դէպքերի մասին յիշատակութիւն չկայ պաշտօնական հաղորդագրութիւններում։

Բուլղարո-ռումանական ճակատի վրայ ուժեղ թնդանօթամարտ տեղի ունի Դանուբի երկարութեամբ։ Այստեղ եղած մի ընդհարման միջոցին ռումէնները ձեռք են ձգել 8 հատ թնդանօթ։ Դոբրուջայի գծում ռուս-ռումանական միացեալ բանակը դուրս է մղել բուլղարներին Բազարջիկից։ Այստեղ գործողութիւնները լուրջ բնաւորութիւն են ստացել։ Գերմանացոց և Բուլղարացոց սպայակոյտները (շտաբները) ռուսական ծրագրներն այստեղ ի դերև հանելու համար ոչ մի ջանք չեն խնայել։

Ընդհանրապէս այս շաբաթը նախապատրաստական գործողութիւններ էին կատարւում բոլոր ճակատների վրայ։ Միայն անգլօ-ֆրանսական ճակատում լուրջ կռիւներ կային։

⁂

## Ներքին տեսութիւն

### ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ

### ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱՅԻ ԱՆԴԱՄ ՊԱՊԱՋԱՆԵԱՆԻ ՏԵՂԵԿԱԳԻՐԸ.

Պետական Դումայի անդամ պ. Պապաջանեանը գաղթականական դպրոցների մասին ուղարկել է Հ. կ. Կոմիտէին հետեւեալ տեղեկագիրը.

Ինչպէս յայտնի է, Հ. կ. Կոմիտէն 10 յունիսի դիմել է Կովկասեան ճակատի գլխաւոր լիազօր գեներալ-մայոր Վ. Թամամշեանին, խնդրելով՝ հարց յարուցանել կառավարութեան առաջ՝ կենտ. Կոմիտէի միջոցով բացուած գաղթականական դպրոցներին նպաստ նշանակելու համար։

Այդպիսի դպրոցների թիւը հասնում է 40-ի՝ 3740 աշակերտներով և 84 դասատուներով։

Բացի բացառապէս գաղթականական դպրոցներից հրաւիրուած են 14 դասատու 8 վայրերի որբանոցներում։

Նախահաշիւ կազմուած է հետեւեալ կերպով.—ուսուցիչներին տարեկան ռոճիկ 52,920 ռ., բնակարանների, լուսաւորութեան, վառելիքի և ծառաների—22,000 ռ., դպրոցական պիտոյքների—14,960 ռ., անակնկալ ծախսեր՝ 2000 ռ., ընդամենը 91,880 ռ.։

Այդ հաշուին ստացուած էր 15,000 ռ., ուստի Կոմիտէն խնդրել էր մնացորդ 76,880 ռ.։

Կոմիտէն տեղեկացրել էր, որ նոյնպիսի դպրոցներ պահպանւում են «Եղբայրական Օգնութեան», Բագուի և Մոսկուայի Կոմիտէների ձեռքով։

Այդ միջնորդութիւնը գեն. Թամամշեանի կողմից ներկայացրած էր գաղթականական յանձնաժողովին յուլիս, օգոստոս և սեպտեմբեր ամիսների ընդհանուր նախահաշուով։

Առանձին յանձնաժողովը քննելով այդ՝ բաց թողեց 3,740 երեխայի դպրոցների համար 28,000 ռ., հաշուելով իւրաքանչիւր աշակերտի 2 ռ. 50 կ. ամսական, մնացած միջնորդութիւնը թողնելով անհետեւանք։

Ի նկատի ունենալով, որ դպրոցական հասակ ունեցող գաղթ. երեխաների թիւը անհամեմատ աւելի է դպրոցներում ընդունուածների և հայոց կազմակերպութիւնները ներկայումս չունեն միջոցներ, ես դիմեցի օգնութեան Մեծ Իշխ. Տատեանայի գլխաւոր Կոմիտէին, որը վարում է միւս ազգերի դպրոցական գործը։

Համաձայն Հ. կ. Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանի հեռագրական դիմումներին ես ընդհանուր թուերով որոշել եմ այսպէս.—

1. Դպրոցական հասակ ունեցող երեխաներ 46,000 և 2, գաղթականներ 274,500։

Այդ թուի 5%-ը կազմում է 14,000 աշակերտ։ Ենթադրելով, որ առնուազն կարելի է ընդունել մինչև 14,000 գաղթ. երեխաներ, ես խնդրեցի Տատեանեան Կոմիտէին հնարաւորութիւն տալ այժմ իսկ բանալ նորից 5,000 հոգու համար դպրոցներ և բաց թողնել հետեւեալ գումարները.—արդէն ընդունուած 3,740 երեխաների նախահաշուի համար 50-ական կոպ. օգոս. սեպտ. և հոկտ. ամիսների համար 5,610 ռ., նոր երեխաների ուսուցման համար հոկտ. ամսին—9,350 ռ., 5,000 նոր երեխաների ուսուցման և նախաճաշի համար 45,000 ռ. և նոր դպրոցների կազմակերպման համար 50,000 ռ.։

Իմ նամակի մէջ յիշատակել եմ, որ լրացուցիչ 5,000 երեխաների դպրոցների կազմակերպման համար ես նորից հարց կը յարուցանեմ միջոցների համար և թէ գաղթականական դպրոցները լինելու են ծխական դպրոցների տիպի, համաձայն 1874 թ. օրէնքի։ Ես խնդրել եմ բաց թողնուած գումարները յանձնել Պետրոգրադի Հայոց Կոմիտէին, որը իւր կողմից ժամանակաւորապէս դրամը կ՚բաժանէ հայոց կազմակերպութիւններին ըստ երեխաների թուի։

Ինչպէս ինձ տեղեկացրին բանաւոր կերպիւ, Տատեանեան Կոմիտէն որոշել է բաց թողնել հետեւեալ գումարները.—

ա) օգոստոսին.—նախաճաշի արդէն ընդունուած 3,740 երեխայի համար 1870 ռ., 5,000 նոր երեխաների ուսուցման և նախաճաշի 15,000 ռ., բ) սեպտեմբերին.—նոյն չափով. գ) հոկտեմբերին.—նախաճաշի 3,740 երեխաներին 1,870 ռ., ուսուցանելու 9,350 ռ. և 5,000 երեխաներին 15,000 ռ., ի նկատի ունենալով նոր դպրոցների բացման արագացումը, որ 5,000 երեխաներին դպրոցներում տեղաւորելուց յետոյ, հնարաւորութիւն կ՚ստեղծուի նոր դիմում անելու միջոցների համար, մինչև որ նրանց թիւը կը հասնի 14,000 հոգու, անհրաժեշտ է, որ հայոց բոլոր կազմակերպութիւնները շտապով համաձայնուեն պարզելու, թէ որքան գաղթական աշակերտի համար նրանցից իւրաքանչիւրը կարող են դպրոցներ բանալ և շտապել օգտուել այդ գործի առթիւ բաց թողնուած գումարներից։

## ՀԱՅԿԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԸ

Ա.

*Ներկայ համաշխարհային պատերազմի ընթացքում, հայկական հարցը քաղաքակիրթ աշխարհի հետաքրքրութեան առարկայ դարձաւ՝ հայ ժողովուրդի կրած անհուն տառապանքների և ցոյց տուած հերոսական պայքարների պատճառով։*

*Մեր դատին համակիր շատ երկիրներում սկսան հրատարակուիլ զանազան թերթեր, որոնց նպատակն է աւելի ընդարձակ ու լայն կերպով ծանօթացնել օտարներին և մեր բարեկամներին հայ ժողովուրդի կուլտուրական արժէքներն ու քաղաքական բաղձանքները։*

*Զոհաբերութեան այն ընդարձակ ծաւալը, որ տուեց Հայաստանի ժողովուրդը՝ անշուշտ պէտք էր արձագանգ գտնէր քաղաքակիրթ մարդկութեան հորիզոններում և համակրական զգացումներ յառաջ բերէր իւր շուրջը։ Բայց միայն մեր դատին համակիր ժողովուրդների հանրային կարծիքի անկեղծութիւնն և մի քանի ուռած և սովորական նախադասութիւնների դարձուածքը չէ, որ պիտի քնացնէ ու լաւատես երազներով օրօրէ մեզ։*

*Հարկաւոր է, որ այդ արտայայտութիւնները հիմնաւոր ու հաստատուն պատուանդանների վրայ հիմնուած լինին։ Մեր հերոսական պայքարների լուրջ ուսումնասիրութիւնը, զոհաբերութիւնների և պարտականութիւնների այն հսկայական տարողութիւնը, որի պատճառով ներկայ աննախանձելի վիճակի է հասել հայ ժողովուրդը, մեր ցեղի անցեալ կեանքի և Ասիոյ այս խուլ անկիւնում նրա կատարած լուսաւոր դերի և այժմուան մտաւոր ստեղծագործութեան լուսաբանութիւնները պէտք է դառնան այդ պատուանդանների անխախտ հիմքերը։*

*Բոլոր այդ արժէքաւոր լուսաբանութիւնների ու փաստերի վրայ է, որ մեր բարեկամ ժողովուրդների տրամադրութիւնը աւելի պիտի բարձրանայ հանդէպ մեզի։*

*Տառապանքների և աղեխարշ տեսարանների նկարագրութիւնը կարող է միայն ցաւակցական զգացումների արտայայտման առիթ հանդիսանալ, իսկ մեզ համար, այնքան արժէքաւոր չէ մեր տառապանքի հանդէպ տեսնել դէմքերի և սրտերի ցաւակցական արտայայտութիւնները, որքան այդ արտայայտութիւնների գործնականացումը և ի նպաստ մեր դատին օգտագործումը։*

*Յայտնի է, որ ոեւէ ժողովուրդի գոյութեան իրաւունքը չի սահմանափակւում միայն նրա ֆիզիքական գոյութեամբ. միայն ֆիզիքապէս պահպանուող ժողովուրդների կեանքը կը նմանի տուներ չունեցող աթոռի կամ բուսական և կենդանական մի համայնքի։ Այդպիսի կենցաղավարութեան լաւագոյն օրինակ կարող են համարուել մեր հարևան քիւրդերն ու տաճիկները, որոնց մէջ կուլտուրական բնազդները այնքան սաղմնային ու անկազմակերպ վիճակում կը գտնուեն, որ նրանց հակադրուած անասնական ու վայրենաբարոյ կիրքերը չափ ու սահման գլորել անցնելով մարդկային համարուելու սահմանից դուրս ամեն տեսակ հրէշային արարքների առակ են դարձել։*

*Մեր ցեղի մշակութային արժէքը, հոգեկան բարձրագոյն ձգտումների ու բնազդների ընդունակութիւնը եղել է ամենահիմնաւոր ազդակը գոյութեան իրաւունքի. ահա թէ ինչու նրա իմացական արտադրութիւնների և գործերի ըմբռնումը և վայելումն աւելի ես կը զօրացնէ և աւելի տեսական զգացումներով կը համակէ մեր ժողովուրդին համակիր օտար սրտերը։*

*Ցանկալի էր, որ մեր լաւագոյն թարգմանիչները և գրողները նուիրուեն նաև այդ նպատակի իրագործման. այդպիսով աւելի արժէքաւոր և աւելի ազդեցիկ պիտի դառնար մեր դատին նուիրուած օտարատառ թերթերի օգտակարութիւնը։*

Բ.

### Armenia—*Արմէնիա Իտալերէն թերթի խնդիրը*

*Միջերկրական ծովի թագուհին համարուող Իտալիոյ գեղեցիկ աշխարհում ես սկսած է արձագանգուել հայկական տառապանքի ձայնը։*

*Դանտէի ու Անճէլոյի այդ զգայուն ու գեղարուեստասէր հայրենիքը՝ հետևելով իր քոյր Ֆրանսայի գեղեցիկ օրինակին, սկսել է յուզուել, Արևելքի Ասիոյ այս արիւնաթաթախ երկնակամարից եկող ճիչերից, մի կենսունակ, կուլտուրական, բայց մահուան մղձաւանջին տակ տնքացող ժողովուրդի հառաչանքներից։*

*Բարեկամական և զգայուն մի շարք յօդուածներ հրատարակուեցան հայերի մասին իտալական նշանաւոր գործիչների և ներկայացուցիչների կողմից, որոնց թարգմանութիւնը սկսել ենք արդէն յաջորդաբար տալ «Համբաւաբեր»-ում*

*Իտալիոյ Թորինօ (Թիւրին) քաղաքում հրատարակուող* «Armenia» *թերթն ես յատկապէս նուիրուած է հայկական պրոպագանդին։*

*Այդ թերթի յարգելի խմբագրութիւնը մի նամակով խնդրում է մեզնից հրաւիրել բոլոր հայ հեղինակներին, որ* Armenia-*ին ուղարկեն իրենց գրուածքները՝ մասնաւորապէս պատմական, քաղաքական և գրական ուղղութեամբ։*

*Նաև լուրջ ուսումնասիրութիւնները տաճկահայ գրականութեան, Հայաստանի և հարևան ազգերի կեանքի և պատմութեան, մանաւանդ քիւրդերի մասին։*

*Խնդրում է յայտնել նաև բոլոր հայ թերթերի և հանդէսների խմբագրութեանց, որ փոխանակեն իրենց թերթերը* «Armenia-*ի հետ, որի հասցէն է՝* Torino, Corso Reqino Marqherita № 72
«Armenia» (ribista mesile illustrata).

*Ծ. Թորգոմեան*

---

## ՎԵՐԱՇԻՆՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԸ

*Վերաշինման սրբազան գործը միայն հայրենի երկրում չի ամփոփւում։ Միայն երկրի փլատակներն ու քանդուած օջախները վերանորոգելով չէ, որ Տաճկահայաստանի ապագայ վերածնութեան գործին նպաստած պիտի լինինք։ Թիւրքական գազանութիւնից ճողոպրած տաճկահայ երեխաների և գերութիւնից վերջերս ազատուած մեր եղբայրների հոգեկան ու ֆիզիքական ոյժերի բարելաւումով է, որ ամենից շատ ապահոված պիտի լինինք հայ ժողովրդի ապագայ վերականգնումը։*

*Երևանից հաղորդում են, որ մեծ թւով տաճկահայ աշակերտներ մտադիր են ուղարկել Էջմիածնի ճեմարանը, իրենց կիսատ մնացած կրթութիւնը շարունակելու համար։ Յայտնի է, որ այդ երեխաները վերջին աղէտալի անցքերի պատճառով հոգեկան մեծ ցնցումների են ենթարկուել և ֆիզիքական աննկարագրելի տանջանքներ տեսել. շատերն այդ երեխաներից թերևս կորցրած էլ են իրենց հարազատները և մնացել են որբ. կան նաև որ թերևս չը կարողանան ուսման այն պատրաստութիւնն ու պաշարը ներկայացնել, ինչ որ պահանջւում է ճեմարանի ծրագրով։ Բոլոր այս հանգամանքների պատճառով կարող է պատահել, որ մերժում ստանան նրանցից շատերը դպրոցի վարչութիւնից։ Բայց կարծում ենք, որ վարչութիւնը նկատի պիտի առնէ գաղթական երեխաների բացառիկ դրութիւնը, նրանց ստանալիք դաստիարակութեան նշանակութիւնը՝ Տաճկահայաստանի ապագայ հայութեան բարգաւաճման տեսակէտից և դպրոցի դռները լայն պիտի բանայ նրանց առջև։ Լուրջ և բարձր ուսում ստացող այդ երեխաներին շատ մեծ կարիք ունի վերականգնող հայութիւնը։*

*Կայ նաև մի ուրիշ կարևոր խնդիր ևս։ Գերութիւնից վերջերս ազատուած հայերի վիճակն է այդ։ Յայտնի է, որ քրդական գերութիւնից ազատուող թշուառների թիւը գնալով բազմա-*

նում է։ Այդ խեղճերի վիճակը՝ իրենց կրած տանջանքների և սարսափների պատճառով, խիստ աննախանձելի է։

Նրանք երկար ժամանակ անօթութեան և մահուան մղձաւանջի ներքև ապրելով՝ կորցրել են իրենց հոգեկան արիութիւնը և նրանցից շատերը—մանաւանդ երեխաները, որոնց մասին վառ գոյներով նկարագրել էր Հանրի Բարբին—նոյնիսկ կորցրել են մարդկային յատկութիւններ։ Այդպիսիների մասին լուրջ հոգացողութիւն պէտք է լինի մեր ազգային մարմինների կողմից։

Միմիայն նպաստ տալով և նրանց ֆիզիքական գոյութիւնը առժամանակ ապահովելով բաւականանալու չէ։ Հարկաւոր է աւելի հասակաւորներին և աշխատանքի ընդունակ եղողներին տեղաւորել այնպիսի վայրերում, ուր կարողանան աշխատել, մանաւանդ ոևէ արհեստ սովորել։ Սովորելով ոևէ արհեստ ոչ միայն հոգեկան հանգստութեան պիտի տիրանան և այդպիսով իրենց վտանգուած ոյժերը պիտի վերականգնեն, այլ և ապագային վերադառնալով իրենց տեղը՝ պիտի զարկ տան երկրի արդիւնաբերութեան և արհեստի բարգաւաճման գործին։

Պետական Դումայի անդամ Մ. Պապաջանեանի զեկուցման համաձայն՝ մօտ 14,000 գաղթական երեխաների դաստիարակութեան համար պէտք եղած գումարը պիտի հայթայթուի զանազան յանձնաժողովների կողմից։ Մինչև հիմա գաղթական երեխաների դաստիարակութեան գործը դեռես իւր բնականոն և նախանձելի վիճակը չի ստացել. դեռևս կան թերութիւններ գաղթականական դպրոցների և որբանոցների թէ տնտեսական և թէ կրթական բաժիններում։ Պէտք է ներդաշնակութիւն մտցնել բոլոր որբանոցների կրթական ծրագրի, մատակարարութեան գործի և բոլոր այն բաների, որոնք պիտի ծառայեն որբերի մտաւոր ու ֆիզիքական ներդաշնակ զարգացման։ Այս ու այն տեղերից լըսում ենք, որ շատ որբեր առանց կօշիկի են, ուսուցիչների ռոճիկը խիստ աննախանձելի են։

Բոլոր մեր ասածներից այն պիտի եզրակացնել, որ վերաշինութեան գործի ամենամեծ բաժինը Կովկասում ապաստանած փախստականներին յատկացնելու է։ Վերջերս յաճախ կրկնուող և համաճարակի բնոյթ ստացած նահանջների պատճառով՝ երկրում թափուած հսկայական աշխատանքները շատ անգամ զուր են անցնում. արդէն դառն փորձերը եկան և հաստատեցին իրերի այդ դրութիւնը։ Հարկաւոր է այդ ուղղութեամբ ծախսուած գումարների և զոհողութիւնների համար խոհեմութիւն և հեռատեսութիւն։

Այսուհետև մեր ուշադրութեան ամենամեծ կենտրոնը պիտի դառնայ մեզ մօտ ապաստանած փախստականների ֆիզիքական գոյութեան պահպանման և բարոյական ու մտաւոր վերականգման գործը։

Առայժմ այդ է ամենից կարևոր և անյետաձգելի խնդիրը։

*Թորգոմ*

---

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

Երզնկայից ստացուած տեղեկութիւնների համաձայն՝ այնտեղի մօտ 11 հազար հայ ազգաբնակութիւնից այժմ մնացել են մօտ 2,000 հոգի, որոնց պահել են տեղական քրդերը։ Երզնկայի շրջագայքից նմանապէս բաւական թուով հայեր ազատուել են և հիմա վերադառնալով իրենց բնակավայրերը՝ սկսել են առևտուրով և հողագործութեամբ պարապել, Կոտորածից ճողոպրած ժողովուրդի բեկորները այժմ եռանդով փարած են առևտուրին ու հողագործութեան և այդպիսով սկսել են վերակենդանացնել այդ շրջանի ամայացած ու փլատակուած վայրերը։

Բաբերդ քաղաքում պատերազմից առաջ եղել է մօտ 16,000 հայ, շրջանում նոյնպէս եղել է մեծ թուով հայ։ Ներկայումս Բաբերդում կան 200-ից աւելի կին և որբ երեխաներ, որոնք թողնուած են բոլորովին անխնամ բառի բուն նշանակութեամբ. բոլորն էլ համարեա մերկ են և դատապարտուած սովամահի։ Օրէցօր աւելանում են Բաբերդի փողոցներում հայ կանանց ու երեխաների թիւը, որոնք անդադար գալիս են շրջանից։ Նրանք ուրուականների նման թափառում են փողոցէ փողոց ու տնից տուն և հաց, հաց աղերսում...

Տրապիզոնի շրջանում ևս գաղթականների և գերութիւնից ազատուածների թիւը սկսել է բազմանալ։ Ռուս բանակի յառաջխաղացման հետ մէկտեղ երևան են գալիս փախստական հայերը այնպիսի շրջաններից, որոնց մասին նոյնիսկ երևակայել չէինք կարող։ Նրանք այնպիսի տառապանքների և դժոխային արկածների են հանդիպել, որ սարսափելի է մտածել։ Օրերով թափառել են սարերի և ձորերի մէջ անքուն և անօթի, միշտ քըրդական ու թիւրքական եաթաղանի սպառնալիքի տակ։

Վասպուրականից հաղորդում են, որ մօտ 5,000 ազգաբնակչութիւնը վերջի նահանջի ժամանակ տեղից չը շարժուեց։ Նրանք մեծ մասամբ թիմարցի և շատախցի էին, որոնք աւելի լաւ էին համարում մեռնել երկրում, քան թէ ձեռք քաշել և հեռանալ օտար վայրեր։

Երկրից նահանջող գաղթականներից մօտ 7,000 հոգի արդէն վերադարձել են իրենց տեղերը, ուրեմն իրական հաշուով այժմ Վասպուրականում մօտ 13,000 հայ կայ, որոնք տեղաւորուած են Վանի և իր շրջակաների, Արճակի և Թիմարի շրջաններում։

Երկրից ստացուած վերջին տեղեկութիւնների համաձայն ազգաբնակութեան թոյլատրուել է վերաբնակել նաև հեռաւոր շրջանների՝ Հայոց Ձորի, Գաւաշի և Շատախի սահմաններում։

Երկիր վերադարձողների հոսանքը բուռն կերպով շարունակւում է։ Նկատի ունենալով՝ որ համաճարակի բնոյթ ստացած «նահանջ»ները կարող են ամեն ժամանակ կրկնուել, Իգդիրում գումարուած ընկերութեանց լիազօրների ժողովը արգիլեց կիների և երեխաների վերադարձը։ Այդ որոշումը խիստ նպատակայարմար է և պէտք է լրջօրէն և ուշադրութեամբ իրագործուի։ Տղամարդկանց և աշխատող ձեռների վերադարձը կարևոր է, որպէսզի Վանայ ընդարձակ այգիներն և ցանուած արտերը երեսի վրայ չմնան և հունձքը՝ հասած ժամանակն լինելով քաղուի։

Մէկ հայ—մէկ ոսկի յայտարարութիւնը բաւական արձագանգ է գտել հայ հասարակութեան մէջ, սկսած են հանգանակել բաւականաչափ գումարներ։

Հայ մարտիկներից Սեպուհն ու Մուրադը այժմ մեկնել են Տրապիզոնի շրջանը՝ իրենց նուիրական առաքելութիւնը այստեղ ևս իրագործելու համար։ Տրապիզոնից Թիֆլիս եկած մի ծանօթ անձ մեզ պատմում է, որ թիւրքերի ձեռքին տակաւին մեծ թուով հայ գերիներ կան։

Ամեն բարի գործի առաջ պէտք է գլուխ խոնարհել՝ ինչ անձնաւորութիւնից կամ շրջանից բղխած լինի այն. բաւական է, որ ծառայի հայ ժողովուրդը ներկայ ծանր արհաւիրքից ազատելու նուիրական նպատակին։

*Հայորդի*

---

## ԲՐԴՈՒԹԻՒՆԻՑ ԴԱՐՁԱԾ ՀԱՅԵՐ

Այս վերնագրով Բագուի «Արևում» մի թղթակցութիւն կայ Իրադեկ ստորագրութեամբ, որից քաղում ենք հետևեալը.

«Աղբակի գաւառը գտնուելով տաճկա-պարսկական սահմանագլխում, ունենալով իր մէջ հօծ քրդութիւն և ամեն կողմից շրջապատուած լինելով աւազակաբարոյ քրդերով—ինչպիսիք են Մարգիկցիք, Ալտոյցիք, Մլանցիք, Թակուրցիք, Մուկուրցիք, Հարդոշցիք և այլն—այս դժբաղդ գաւառը դարեր շարունակ ան-

խնայ հարստահարուել ու ասպատակուել է թէ Տաճկաստանի և թէ Պարսկաստանի քրդերից։

«Սրանք անվերջ կողոպտել, անասելի բռնութիւններ են կատարել Աղբակի փոքրաթիւ հայութեան վերաբերմամբ և միշտ էլ մնացել են անպատիժ — եթէ չասենք՝ միշտ էլ խրախուսուել են իրենց կառավարութիւններից։

«Բացի այդ Քրդութիւնն Աղբակի շրջանում հայերի գլխին և մի այլ ձևի պատուհաս է եղել։ Հաստատուելով Աղբակում, քրդերը ժամանակի ընթացքում խլել են հայերի հողերը... բայց թէ ինչպէ՞ս, ինչ ճանապարհներով — այդ մասին մի այլ անգամ։ Այսքանը միայն այստեղ պիտի ասենք, որ շատ անգամ իրենք հայերն են գնացել և այս կամ այն քիւրդ բէգի կամ աղայի թևերի տակը մտել, նրան հող տուել, իրենց գիւղում ապրելու տեղ տուել, որպէսզի նա իրենց պաշտպանէ միւս քիւրդ աղաների ու բէգերի, աւազակների ու հզօրների ոտնձգութիւններից։

«Մասամբ դրանով պիտի բացատրել, որ երբեմնի զուտ հայաբնակ Աղբակում այսօր չկայ գէթ մի հատիկ գիւղ, որ զուտ հայաբնակ լինէր։ Բոլոր հայ գիւղերում քրդերը բնակչութեան բաւական խոշոր մասն են կազմում և յաճախ նոյնիսկ ճնշող մեծամասնութիւնը։

«Հայերի դրութիւնն Աղբակում շատ աւելի վատթարացել է մանաւանդ այն ժամանակ, երբ, օրինակ, տաճիկը պատերազմ է ունեցել ռուսների հետ կամ երբ տաճկահայութիւնը կոտորածի է դատապարտուած եղել։ Յայտնի է նաև, թէ վերջին ռուս-տաճկական պատերազմի ժամանակ ինչպիսի գազանութիւններ գործեց Շէյխ-Ջալալէդդինը մասնաւորապէս Աղբակում։

«Նոյնը կրկնուեց նաև 1896-ի կոտորածի օրերին։ Հայութիւնն այստեղ ևս բաւական զոհեր տուեց։ Շատերը, նոյնիսկ ամբողջ գիւղերը, ստիպուած եղան իսլամն ընդունել «հռչակաւոր» Շարաֆ-բէկի սրից ազատուելու համար։

«Այսպէս օրինակ, Աշկերտի, Սորադէրի և Կարաբուլիի հայերը — առանց բացառութեան — մահմեդականութիւն ընդունելով միայն կարողացան իրենց կեանքերը փրկել։

«Եւ այս խեղճերն ուրիշ հնար էլ չունէին, որովհետև նախ այդ գիւղերը գտնւում էին քրդերի մէջ, հեռու Աղբակի հայկական մասից, որ գաւառի կենտրոնն է, և երկրորդ՝ կամ պիտի կրօնափոխ լինէին կամ մեռնէին — այդպէս էր Շարաֆ-բէկի հրամանը։

«Քրդացած հայերը մինչև ներկայ պատերազմի սկիզբը մընում են քուրդ կամ գոնէ իրենց այդպէս են ձևացնում։ Բայց ներքուստ չեն կարողանում իրենց կապը խզել մայրենի եկեղեցու և ազգութեան հետ։ Երեխաներին գիշերով տանում են մօտիկ հայկական գիւղերը — գլխաւորապէս Էրինգեանի — և ծածուկ մկըրտում։ Աղջիկներին ամուսնացնում են իրենց նման քրդացած հայերի և ոչ իսկական քրդերի հետ. բայց մեռելներին թաղում են ընդհանուր քրդական գերեզմանոցում, որովհետև անկարելի էր այլ կերպ վարուել։

«Գալիս են տաճկական առաջին անյաջողութիւնների օրերը։ Աղբակի քրդերը փախչում են դէպի երկրի խորքերը, նախօրօք, տաճիկ կառավարութեան հրահանգով, հայերին կոտորելով։ Կոտորում են նաև Սորադէրի քրդացած հայերին, որովհետև սրանց վերաբերմամբ կասկածում են։ Սրանք բռնուել էին անցեալներում երկիր զէնք փոխադրելիս։

«Աշկերտի, Կարաբուլիի և Սորադէրի մնացորդ քրդացած հայերին ես ստիպմամբ տանում են հետերնին։ Գնում են 3 օրուայ ճանապարհ. սակայն քրդացած հայերը դիտաւորեալ կերպով կամաց-կամաց յետ են մնում, մինչև որ յաջողեցնում են մի կերպ քրդական աչքերից ու հսկողութիւնից ճողոպրել ու յետ գալ։

«Գալիս են Բաշկալա, երբ ռուս զօրքն արդէն այնտեղ մտած է եղել։ Գալիս և յանձնւում են։ Այսօր նրանք բոլորը կրկին վերադարձել են իրենց մայրենի ժողովրդի ծոցը և իրենց հայ են անուանում, իսկ ուրիշները նրանց կոչում են քրդացած հայեր։ Մեր ունեցած տեղեկութիւններով, մօտ 120 հոգի պիտի լինեն նրանք — 9 տուն Աշկերտից, 7 տուն Սորադէրից, 5 տուն Կարաբուլիից։»

Հարկաւոր է այժմից ուշադրութիւն դարձնել այս քրդացած հայերի, մանաւանդ երեխաների կրթութեան վրայ։ Մեր բոլոր յոյսը Ատրպատականի եռանդուն և անձնանուէր առաջնորդ Ներսէս եպիսկոպոս Մելիք-Թանգեանի վրայ է։ Վստահ ենք, որ նորա դիմումները ինպաստ այս քրդացած հայերի անօգուտ չեն անցնիլ։

---

## ՀԱՅ ՓԱԽՍՏ. ՆՊԱՍՏ. ՀԱՅ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՆԻՍՏԸ

Օգոստոսի 30-ին Առաջնորդարանում Մեսրոպ եպիսկոպոսի նախագահութեամբ կայացաւ Հայ փախստականներին Նպաստող Ընկերութեանց միութեան նիստը։

Վանի շրջանի համար սերմացու գնելու առթիւ, ժողովը որոշեց 50,000 ռ. փոխադրել Խոյի հիւպատոս Կիրասնովի միջոցով Միութեան ներկայացուցիչներին սերմացու գնելու համար։

Ալ. Խատիսեանն ու Գր. Ջալխուշեանը առաջարկել էին, որ Միութիւնը վերցնէ գերիների ազատութեան գործի վարումը և ստանայ այդ նպատակով հաւաքուած ու հաւաքուելիք գումարները։

Ժողովը որոշեց՝ անմիջապէս Երզնկա փոխադրել 10,000 ռ. ի հաշիւ հանգանակուած գումարների՝ 3,000 հայ ազատուածների կարիքների համար։

Դիմել պ. Ջալխուշեանին և խնդրել, որ Կիսլովոդսկուց հանգանակած գումարը յանձնէ Միութեան գանձարանին։

Խնդրել «Հորիզոնի» և «Արև»ի խմբագրութիւններին, որ իրանց մօտ այդ նպատակով ստացուած և ստացուող գումարները յանձնեն Միութեան, և մշակել որոշ ծրագիր գործը նպատակայարմար ձևով վարելու համար։

## ԲԱԳՈՒԻ ԴԻՄՈՂ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻՆ Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Զնայած որ բոլոր գաղթականական հիմնարկութիւններին, նմանապէս և գաղթականներին վաղուց յայտնի է, որ Բագուն ճանաչուած է ոչ-գաղթականական վայր և գաղթականներին արգելուած է Բագու գալը, որի մասին մենք իր ժամանակին ամենալայն կերպով յայտարարել ենք, այնուամենայնիւ գաղթականները շարունակում են գալ Բագու և նոյնիսկ գաղթականական հիմնարկութիւնների կարգադրութեամբ։

Որովհետև այդ նորեկ գաղթականներին մենք ոչ մի նպաստ և անցագիր չենք կարող տալ, այդ պատճառով թէ մենք և թէ այդ գաղթականները մնում ենք մի անել դրութեան մէջ։ Ուստի խնդրում ենք Ձեզ, ի լրումն սոյն թուի մայիսի 14-ի № 212 նամակի, յայտարարել «Համբաւաբերում» վերոյիշեալի մասին ի գիտութիւն գաղթականական հիմնարկութիւնների և գաղթականների։

Նախագահ Կոմիտէի՝ Հայկ Տէր-Միքայէլեան, Քարտուղարի տեղ՝ Ա. Մուրադ։

## ԳԱՒԱՌ

### ԲԱԹՈՒՄԻ ՈՐԲԱՆՈՑԸ

*Երբ Ռիզէն ու Տրապիզոնը նուաճուեցան, Բաթումի Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղը և «Հայրենակցական միութիւնը» տեղիս մի խումբ երիտասարդներից կազմուած մի մասնախումբ ուղարկեց, որ հաւաքեն հայ որբերին ու կանանց և ուղարկեն Բաթում։ Ռիզէյի և Տրապիզոնի շրջակայքից մերոնք հաւաքում էին որբեր՝ ամեն մէկը իր առանձին անունով և ազգանունով նշանակելով ուղարկում։ Բաթումում, Հ. Բ. Ը-թիւնը վարձել է մի շէնք, որտեղ հիւրընկալւում էին բոլոր նորեկները, անհրաժեշտ օգնութիւն և սնունդ ստանում, այնուհետև ով որ ազգական բարեկամ ունէր, գտնում, գնում էր։*

*Ուղարկուեցան շատ որբեր՝ ամենքն էլ Թրքախօս. նրանք մոռացել են մայրենի լեզուն։ Բ. Ը. և Հայր. միութ. ձեռք ձեռքի տուած՝ Կ. Հ. Բ. Ը-թեան անունով Կոբուլեթում վարձեցին մի ընդարձակ շէնք, կանաչազարդ բակով, ծովափին շինուած և դեռ ձմրան վերջերին բոլոր որբերը տեղափոխուելու են այդտեղ։*

*Յուլիսի 11-ին որբանոցին այցելութեան եկաւ կենտրոնական կոմիտէի կողմից լիազօրուած իրաւաբան պ. Պապեանը։ Որբանոցի կառավարիչ պ. Հախումեանը պ. լիազօրին ծանօթացրեց որբանոցի բոլոր անցուդարձերին։ Մեր որբերի թիւը մօտ 57 է տղայ և աղջիկ զանազան հասակի։ Որբանոցի ընդարձակ բակում երկու շէնք կայ, մեծ շէնքում փոքրիկների ննջարաններն են, որոնք մահճակալ չունեն և յատակի վրայ են քնում։ Մեծ երեխաները օրեկան երկու ժամ սովորում են։ Ժամանակաւոր կառավարիչ և ուսուցիչ է վարձուել տեղիս երկսեռ ծխ. դպրոցի աւագ ուսուցիչ Աշոտ Հախումեանը։ Որբանոցի կառավարիչը առաջարկեց պ. լիազօրին այցելելու լատիշների որբանոցը, որը նոյնպէս Կոբուլեթումն է, և շատ հեռու չէ մեր որբանոցից։*

*Լատիշ որբանոցի կառավարչուհին շատ ուրախ և սիրալիր ընդունեց մեզ։ Մեզ հետ տարել էինք և մեր որբ երեխաներից մեծ տղաները ու աղջիկները. լատիշ որբերը բոլորը աղջիկ են ութից մինչև տասնեօթը տարեկան, նրանք ամենքն էլ շատ ուրախացան, տեսնելով մեզ և մեր երեխաներին։*

*Մեր երեխաները հիւրասիրուեցին քաղցրաւենիքներով։ Նրանց երեխաները բերուած են Մոսկուայից և ամենքն էլ շատ առողջ տեսք ունէին։ Վարժուհու կարգադրութեամբ նրանք մեր երեխաների համար երգեցին մի քանի լատիշերէն երգեր, մերոնք շատ գոհ մնացին և ծափահարեցին նրանց։ Յետոյ նրանք խնդրեցին, որ մերոնք երգեն. բայց որովհետև մերոնք հայերէն թէ խօսել և թէ երգել մոռացել էին, երգեցին տաճկերէն ժողովրդական երգեր, լատիշ որբերը ուրախացան և ծափահարեցին մերոնց. Նրանց վարժուհին շատ զարմացաւ, որ մերոնք գոնէ մի հատիկ հայերէն երգ անգամ չը գիտեն, բայց մեր ուսուցիչը բացատրեց, որ նրանց նախ հարկաւոր է հայերէն խօսել վարժեցնել։ Մենք գոհ վերադարձանք մեր որբանոցը։ Արդէն երեկոյ էր, արևի հրեղէն գունդը հանդիսաւոր, փառահեղ գնում էր և սուզւում ծովի խորքը, ամեն ինչ ծիրանի գոյն էր ստացել. երեխաները ծովում լողացան. օրը երկու անգամ լողանում են բժշկի պատուէրով։ Երեկոյեան ամենքս էլ հաւաքուեցինք մեծ սեղանի շուրջը թէյ խմելու։ Կարօտակէզ երեխաները կանգնած մի ծառի տակ երգում էին տաճկական սրտաճմլիկ մի երգ. «աման մայրիկ ջան, աման հայրիկ ջան...» և կսկիծի դառն հեծեծանքները մանկական կրծքերից խուլ հառաչներով բարձրանում էին դէպի Նախախնամութեան բարձունքները։*

*Որբանոցը ունի և իր հիւանդանոցը. մի շատ յարմար առանձին շէնքում. այստեղ կայ 20 մահճակալ՝ շատ մաքուր կերպով կահաւորուած։ Հիւանդների թիւը ինն է. բայց մէկն է ծանր հիւանդ հիւծախտով (տուբերկուլեօզով), միւսները որը կոկլիւշ ունի, որը աչքացաւ, որը գլխի վէրքեր ունի։ Բացի այն ծանր հիւանդից միւսները ուրախ ուրախ թէյ էին խմում. հիւանդանոցն ունի իւր ֆելդշէրը, որը դժբախտաբար չի կարող բացատրուել ոչ աղախինների և ոչ երեխաների հետ։ Այդ հանգամանքի պատճառաւ չափազանց ջղայնանում է և մեր հայախօս գաղթական աղախիններին դնում անել դրութեան մէջ. պարզ է, որ նպատակին ծառայած և կրկնակի օգուտ ստացած կը լինէր վարչութիւնը և հիւանդանոցը, եթէ հրաւիրէին հայ լեզու հասկացող և սրտով մեր ցաւերին մօտ մի անձնաւորութիւն։ Ֆելդշերուհին ինքը ես գանգատուեց, որ լեզու չը գիտենալու պատճառով շատ է նեղւում։ Հիւանդանոցում, ինչպէս և որբանոցում սընունդը շատ լաւ է տրւում. երկու տեսակ կերակուր, միս, կանաչեղէններից պատրաստուած կամ կաթնապուր առաւօտ երեկոյ թէյ հաց ու պանրով։ Հագնուած են մաքուր. ամենքն էլ տնամաններ ունեն. Մնում է երեխաներին տալ և մտաւոր պաշար, որի մասին ես հոգում է ուսուցիչը. Նա մտադիր է ի միջի այլոց երեխաներից պատրաստել մի մանկական հանդէս գրական-երաժշտական բաժիններով. պատրաստում են նաև «Գող սիրտը դող» մանկական պիեսը ներկայացնելու։ Հարկաւոր է շատ աշխատանք թափել, որպէսզի մեր սիրելի որբուկները շուտով կարողանան իրենց մայրենի լեզուին տիրանալ։*

*Մարգարիտ*

---

### ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

*Հայ հարուստ Ն. Մ. Առաֆելեանը հայ գերիների ազատագրման գործի համար յատկացնելով 1000 ռ., դժգոհութիւն է յայտնում պ. Գր. Չալխուշեանից, որ առանց նկատի ունենալու յիշեալ հարուստի դրամը Բագւում տալու խոստումը՝ ամբաստանել է նրան թերթերում։*

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Սուխում—վարչութիւնից.*

*Սուխումի Յանձնաժողովի որոշումով բացւում է մի ապաստարան Անաբոշխայի շրջանի 50 որբի համար։*

—

*Ալէքսանդրապոլ վարչութիւնից.*

*Տեղս են հասել 160 որբ. կարգադրութիւն արէք։*

—

*Ղարաքիլիսայից հեռագրում են, որ հարկաւոր է շտապով այնտեղ ուղարկել բժիշկ, ֆելդշէր և դեղորայք՝ փախստականների բժշկական կարիքները հոգալու համար։*

—

*Նոր-Բայազիդից հեռագրում են, որ շրջանի 20 գիւղում անհրաժեշտ է բանալ դպրոցներ. դպրոցական հասակ ունեցող երեխաների թիւը իւրաքանչիւր գիւղում հաշւում է 30—40։*

—

*Սարիղամիշ—Լիազօր Փիրումեանից.*

*Խնուսից 25 որբ են եկել. կարգադրեցէք ո՞ւր տեղաւորեմ։*

*Որոշուեց սրանց բերել Ալէքսանդրապոլ, և այդ մասին արդէն արուած է կարգադրութիւն։*

# Քրոնիկոն

Հռչակաւոր հայագէտ և վրացագէտ ուսուցչապետ և Գիտութեանց ճեմարանի անդամ Ն. Մառը այս ամառ գնացել էր Վան հնագիտական պեղումներ անելու։ Վերջին նահանջից յետոյ նա գնաց Անի միևնոյն նպատակով։ Օգոստոսի 25-ին Թիֆլիս ժամանելով՝ 27-ին մեկնեց Պետրոգրադ։

***

Կովկասեան թանգարանի աւագ պահապան Ս. Տէր-Աւետիքեանը անցեալ ձմեռ Վան գնաց հնագիտական ուսումնասիրութիւններ կատարելու և հայերէն ու թիւրքերէն ձեռագրեր ժողովելու։ Նա էր, որ մօտ 1200 հայերէն ձեռագիր հասցրեց Մայր Աթոռը։ Այս ամառ էլ նա ուղևորուեց ուսումնասիրութեան համար Էրզրումի և Երզնկայի շրջանները։ Տէր-Աւետիսեանը լուսանկարել է հին արձաններ, արձանագրութիւններ, նաև մուսուլմանական ձեռագրեր։

***

Ի նկատի ունենալով, որ Կովկասի փոխարքայութեան վարչական բաժանումը հնացել է, մտադրութիւն կայ հաստատել ներքին գործերի նախարարութեանը կից միջավարչական մասնաժողով՝ Կովկասի նահանգների և գաւառների այժմեան սահմանները վերաքննելու։ Այդ անհրաժեշտ է համարւում համայնական (զէմստվային) հաստատութեանց կանոնաւոր գործունէութեան համար։

***

Ինչպէս տեղեկանում ենք, Մեսրոպ եպիսկոպոսը դիմել էր Վեհ. Կաթողիկոսին յայտարարութեամբ և խնդրել, որ թոյլատրի իրան գնալ Հաղբատի վանքում մնալու, իբրև վանահայր։ Վեհ. Կաթողիկոսը պատուիրել է նորան, որ նախ գնայ իր նոր պաշտօնատեղին և ապա, եթէ չը կամենայ շարունակել իր պաշտօնը, հրաժարական տայ։ Այժմ Մեսրոպ եպիսկոպոսը որոշել է կատարել Հայրապետի պատուէրը, և առաջիկայ կիրակի մեկնում է իր նոր պաշտօնատեղին։ Այս առիթով պէտք է յայտնենք, որ մի խումբ հասարակ. գործիչներ՝ գլխաւորութեամբ Ներսիսեան դպրոցի հոգաբարձութեան կամեցել են հասարակական յարգանք կազմակերպել Մեսրոպ եպիսկոպոսի համար, սակայն ինքը, Մեսրոպ եպիսկոպոսը հրաժարուել է։

***

Լսում ենք, որ Տիգրան Նազարեանը Շուշի քաղաքում բացել է «Հրատապ Սփոփանք Մայր Հայաստանցիների» ճիւղ, որի համար ընտրուած է վարչութիւն։ Ճիւղը Շուշում արդէն վարձել է բնակարան 200 որբի համար։ Որբերին Շուշի փոխադրելու և պահպանութեան ծախքերի համար գեն. Թամամշեանը պ. Նազարեանի տրամադրութեան տակ դրել է առայժմ 20,000 ռ.։ Որբերը տարուել են տեղական որբանոցներից և Էջմիածնից։

***

Թիֆլիսում սեպտեմբերի 1-ից դադարում է էլեկտրաքարշի գիշերային երթևեկութիւնը։

***

Կիրակի, օգոստոսի 28-ին, Գէորգիևսկայա փողոցի վրայ, Քաշուէթի եկեղեցու դիմաց, բացուեց համագործակցական (կօօպերատիւ) ճաշարան։

***

Ամսիս 1-ից Թիֆլիսում բանելու են էլեկտրաքարշի 2 վագոն աշակերտների համար. մէկը Զէրքէզեան, Փետրուարի 19-ի փողոցներով և Ցիցեանովի վերևլքով Հաւլաբար, իսկ միւսը՝ Միքայէլեան պողոտայով, Վերայի կամուրջով, Գոլովինեան պողոտայով Երևանեան հրապարակ։

Անդրկովկասի երկաթուղու վարչութիւնը օգոստոսի 24-ից հրահանգել է բոլոր կայարանապետներին, որ գնացքների երթևեկութեան յետաձգման պատճառով կայարաններում 6—12 ժամ սպասող ճանապարհորդները կայարանի հաշուին ստանան ուտելիք։

***

Օգոստոսի 29-ին բացուեց քաղաքային կենսամթերքի մի խանութ ևս Դ-րդ թաղամասում, Երուսաղէմեան փող., Դանղուլեանի տանը։

***

Առաջիկայ յունուարին 1-ի Թիֆլիսում բացուելու է առևտրա-արդիւնաբերական բանկ։

***

Զուբալովի անուան ժողովրդական տունը կառավարելու պաշտօնը յանձնուած է քաղաքային վարչութեան անդամ Մ. Ն. Աթարէկեանին։

***

Օգոստոսի ընթացքում Կ. Հ. Բ. Ը-թեան ընթերցարանն են յաճախել 6551 հոգի, որից 3,567-ը այր-մարդ և 2,984-ը կին. գրադարանից դուրս է տրուած կարդալու համար 1721 գիրք հայերէն, 909 ռուսերէն. ընդամենը 2,630 կտոր գիրք։

***

Թիֆլիսի քաղաքագլուխը դիմել է Ամենայն Հայոց Կաթողիկոսին, միջնորդելով քաղաքին զիջել հայոց Սինոդին պատկանող հողից մի շերտ՝ Վերայի կամրջից դէպի Վերայի այգին տանող ճանապարհն ընդարձակելու համար։

# Արտաքին տեսութիւն

## ԴՐՈՒԹԻՒՆԸ ՅՈՒՆԱՍՏԱՆՈՒՄ

Վերջին ազատագրական պատերազմներից ի վեր Յունաստանը աւելի դժնդակ օրեր չէ տեսել քան այն, որ ապրում է ներկայումս։ Նոյն իսկ թիւրք-յունական պատերազմի ժամանակ, երբ յաղթական թշնամին գրաւելով Թեսալիան սպառնում էր Աթենքին՝ նրա դրութիւնը այնքան վատ չէր, ինչքան հիմա։ Այն ժամանակ Յունաստանը տաճկական լծի տակ տառապող եղբայրակիցներին ազատելու համար մի հերոսական շարժումով (ժեստով) դուրս էր եկել անհաւասար կռուի, շատ լաւ իմանալով, որ ինքը պարտութիւն է կրելու։ Նրա զինուորական պարտութիւնը բարոյական յաղթանակ էր։ Եւ Եւրոպայի հասարակական կարծիքը ըստ արժանւոյն գնահատելով այս հանգամանքը՝ ոչ միայն ստիպեց թիւրքերին թողնել յունական հողը, այլ և նրանց արիւնոտ ձեռքերից դուրս կորզեց Կրէտէ կղզին։ Այժմ Յունաստանը ոչ միայն զինուորական, այլ և քաղաքական ու բարոյական անկման դառն օրեր է ապրում...

Սկուլուդիսի գերմանասէր կառավարութիւնը հրաժարուելուց և նրա տեղը ճշգրիտ (կոռեկտ) չէզոքութեան կողմնակից Զայմիսին կառավարութեան գլուխ կանգնեցնելուց յետոյ՝ Քառապետական Համաձայնութեան դիւանագէտները կարծում էին, թէ գերմանական դաւերի առաջն առնուած է։ Սակայն գերմանական ճկուն դիւանագիտութիւնը նորանոր ճանապարհներ գտաւ իր պրոպագանդն առաջ տանելու համար և Զայմիսի կառավարութեան ժամանակ գերմանական լրտեսութիւնը գործում էր նոյն յաջողութեամբ, ինչ որ նրա նախորդի ժամանակ։

Այս դրութեանը միանգամ ընդմիշտ վերջ տալու համար Քառապետական Համաձայնութեան ներկայացուցիչները ամսիս 20-ին մի յատագիր ներկայացրին Աթենքի կառավարութեանը, որի մէջ մատնանշելով վերոյիշեալ պրոպագանդի ու լրտեսութեան յարաճուն ընթացքը՝ պահանջում էին առաջին՝ իրենց յանձնել բոլոր

պատ-հեռագրական հաստատութիւնների հսկողութիւնը, երկրորդ՝ արտաքսել Յունաստանից թշնամի պետութեան բոլոր գործակալներին և երրորդ՝ պատժել այն յունահպատակներին, որոնք որև է ձևով աջակցութիւն են ցոյց տուել թշնամիներին։ Այս պահանջներին հարկաւոր չափով հեղինակութիւն տալու համար դաշնակիցների նաւատորմիղը, բաղկացած մօտ 55 ռազմանաւից և եօթը փոխադրանաւից, նոյն օրը երևում է Մորէայի արևելեան ափերին և մինչև անգամ մտնում ներքին նաւահանգիստները։ Յունական կառավարութիւնը, սարսափի եկած, բնականաբար հլու կամակատարութեամբ ընդունում է դաշնակիցների բոլոր պահանջները, իսկ վերջիններս զօրք են հանում Աթէնք և գրաւում քաղաքի բաղխս հեռագիրը և զինանոցը։

Սակայն այս արտաքին նուաստացումներով չի սահմանափակւում յունական ճգնաժամը։ Դրա գլխաւոր ազդակը աւելի ներքին հակամարտութիւնների մէջ է քան թէ արտաքին ճնշումների։

Պատերազմի առաջին տարին թէ ժողովուրդը և թէ զօրքը բաժանուած էր երեք խմբի. մի մասը կողմնակից էր աւստրօ-գերմանացիներին, միւսը՝ դաշնակիցներին և երրորդը՝ չէզոքութեան։ Այս երեք հոսանքները մշտական վէճի մէջ էին բռնուած, սակայն նրանց վէճը սովորական բանակռիւների սահմանից դէնը չէր անցնում։ Բուլղար առաջխաղացութիւնը Յունաստանի տրամադրութեան մէջ շատ խոշոր փոփոխութիւններ առաջ բերեց։ Յոյն հայրենասէրները չէին կարող անտարբերութեամբ հանդիսատես լինել, թէ ինչպէս իրենց դարաւոր թշնամին իրար յետևից գրաւում է մակեդոնական այն շրջանները, որ վերջին Բալկանեան պատերազմով Յունաստանին բաժին էին ընկել։ Իսկ Աթէնքի կառավարութիւնը շարունակ հրամայում էր սահմանապահ զօրքերին առանց կռուի թշնամու ձեռքը տալ սահմանի ամրութիւնները միջի զինամթերքով հանդերձ... Մի քանի անգամ յոյն զօրքերը հակառակ այս հրամանին դիմադրեցին բուլղարներին. սակայն կառավարութիւնը պատժեց «ըմբոստներին», որով և խնդիրը փակուեց։

Այս դրութիւնը շարունակուեց մինչև բուլղարները մտնեցան Սերեսին։ Գեներալ Դոբրիտոպուլոսը, հակառակ կառավարութեան կարգադրութեան, ուժեղ դիմադրութիւն ցոյց տուեց բուլղարներին և միայն նրանց ճնշման տակ նահանջեց դէպի հարաւ։ Այս դիմադրութիւնը ազդանշան եղաւ Սալոնիկի շրջանում գտնուած յոյն զօրքերի համար՝ ապստամբութեան դրօշ բարձրացնելու կենտրոնի կառավարութեան դէմ։ Կազմուեց «ազգային պաշտպանութեան» մի յանձնաժողով, բաղկացած մեծ մասամբ սպաներից, որ ժողովրդին ուղղած իր հայրենասիրական կոչով պահանջում է կառավարութիւնից՝ անմիջապէս բուլղարներին զէնքով դուրս անել յունական հողից։ Օգոստոսի 22-ին այս յանձնաժողովին յարեցին երկու գնդապետ՝ Զիմբրաքակի և Մազարակի իրենց կանոնաւոր զօրքերով։ Սալոնիկի շրջանում գտնուած մի ուրիշ գնդապետ, Տրիգուպիս անունով, որ իր գնդի հետ ուզում էր հաւատարիմ մնալ թագաւորին՝ զէնքի ուժով ընկճուեց և անձնատուր եղաւ։ Այնուհետև վերոյիշեալ ապստամբ գնդապետները իրենց զօրքերով մտնում են գեներալ Սարայի հրամանատարութեան տակ՝ բուլղարների դէմ գործելու համար։ Դաշնակիցներին են յարում նաև Սալոնիկի ժանդարմերիան և քաղաքի պրեֆէկտը։ Այսպիսով յոյն ժողովրդի և զօրքի պառակտումը դառնում է կատարեալ։

Այս վտանգաւոր դրութիւնը բարդանում է մի նոր միջնադէպով, որի մասին այսօրուայ հեռագրերը մեզ տեղեկութիւն բերին։—Ամսիս 28-ին դաշնակիցների դեսպանները ֆրանսական դեսպանատանը ժողով ունեցած ժամանակ, մի քանի մարդ, յայտնի չէ ինչ նպատակով, կրակ են բանում դեսպանատան վրայ։ Չնայած որ Զայմիսը կառավարութեան անունից անմիջապէս ներողութիւն է խնդրում ֆրանսական դեսպանից, սա իր պաշտօնակիցների հետ միասին պահանջում է նախ՝ պատժել յանցագործներին ու քաղաքի ոստիկանական պաշտօնեաներին և ապա՝ փակել պահեստի զօրքերի լիգան, որ իր բազմաթիւ ճիւղերով գերմանասիրական ակներև միտումներ (տենդենցներ) է ցոյց տալիս։ Զայմիսը ընդունում է այս պահանջները, բայց և միաժամանակ հրաժարական է տալիս։

Թէ ինչն է դրդապատճառը այս հրաժարականի, կամ ինչպէս է նա հիմնաւորում—այժմ յայտնի չէ։ Յայտնի չէ նոյնպէս, թէ ով է լինելու Զայմիսի յաջորդը, թէև իբրև թեկնածու յիշւում է Դիմիտրակոպուլօն, որ առաջներում նա առաջին նախարարի պաշտօն է կատարել։ Ամենայն հաւանականութեամբ այս անգամ նա Վենիզելոսին իշխանութիւն չի յանձնուի, որպէսզի Յունաստանի քաղաքականութիւնը վերջնականապէս ջարդուի։ Բայց այս բանից առաջին տուժողները արքայական հարստութիւնը (դինաստիան) և սրան շրջապատողները պէտք է լինին։ Յունաստանի փրկութիւնը ներկայ հանգամանքներում Քառապետական Համաձայնութեան զինակցելն է։ Այս զինակցութեան յապաղումը անխուսափելի կերպով պէտք է տանի երկիրը դէպի ազգամիջեան պատերազմ, որի տակից Կոստանդին թագաւորը դժուար թէ կարողանայ դուրս գնալ։

Ա. Զ.

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԻՏԱԼԱՑՈՑ ՄԱՄՈՒԼԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

### Դ.

### ՀԱՅԱՍՏԱՆ

Էրզրումից յետոյ Տրապիզոնի անկումը մեզ՝ իտալացիներիս յիշեցնում է, որ Հայաստանը գոյութիւն ունի։ Մենք Հայաստան ասելով չենք հասկանում այն երկրամասը, որտեղից այսօր յաղթական առաջանում են Մեծ Իշխան Նիկ. Նիկոլայևիչի բանակները և որը ռազմագիտական լեզուով համառօտած ասում են «Կովկասեան սէկտոր», այլ հայոց ազգը, որը, մենք պաշտօնապէս մոռացել էինք, որը յայտնի դարձաւ մի դարաւոր հարցում և որի հանդէպ Իտալիան չէ կարող անտարբեր մնալ։ Այդ այդպէս չի կարող լինել մարդկայնութեան և արդարութեան տեսակէտից, որովհետև Հայաստանի վայրագ կոտորածը՝ ներկայ պատերազմի ընթացքում աւելի անգութ կատաղութեամբ վերսկսած իրանից ներկայացնում է մի մարտիրոսագրութիւն, որ ոչ թէ հաւասար, այլ դեռ աւելի վատթար է քան Բելճիքայինը։ Տարբերւում է նաև այն տեսակէտով, որ շատ երկար տարիներից ի վեր է որ շարունակւում է այդ մարտիրոսութիւնը։ Մենք կրկնում ենք, որ մեր ազգային շահերը անմիջապէս և հրամայողաբար պահանջում են շահագրգռութիւն։ Հայոց հարցը լինելով Միջերկրական ծովի հետ կապ ունեցող հարց, ինքնին Իտալական հարց է։

Ամենքս էլ գիտենք, որ կան հայ նահանգներ այսօրուան ռուսաց, պարսից հողի վրայ։ Եւ եթէ Հայաստան ասելով հասկանայինք Տաւրոսի շղթայի և Սև ծովի մէջ ընկած «վիլայէթների» երկիրը, որի միջով այսօր առաջանում են Մոսկովեան բանակները, Միջերկրականի Ասիական ծովափին և մասնաւորապէս Կիլիկիայի նահանգներում կայ իւր աւանդութիւններով և շահերով մի հայ ժողովուրդ, որ իւր ճակատագիրը կապած ունի մերձաւոր Արևելքի մեծագոյն հարցին հետ։

Արդ՝ չկայ եւրոպական մեծ թէ փոքր մի այլ պետութիւն քան Իտալիան, որ աւելի մեծ և աւելի լաւ կապերով կապուած լինէր այդ ափերի և նրա այն ժողովուրդի հետ, որ ինքն իրան ասում է «Արևելքի հռոմայեցի»։

Ոչ միայն այն պատճառով, որ Քրիստոսի 1000 թուականից յետոյ՝ երեք դարերի միջոցին Կիլիկիայում մի հայ թագաւորու-

Տրապիզոնի անկումը Էրզրումից յետոյ սկիզբն է արեւելեան Միջերկրականի մէջ գալոց օրերին տեղի ունենալիք աւելի կարեւոր և ընդարձակ դէպքերի և որ ազդարարումն է մեզ, որ մենք լինենք աչալուրջ և արթուն։

G. A. Rosso

Idea nazionale

Թարգմ. իտալերէնից, Արշ. Ֆէթվաճեան

---

## ՀԱՅԱՆՊԱՍՏ ՇԱՐԺՈՒՄՆԵՐ ՖՐԱՆՍԻԱՅՈՒՄ

### Ա.

### «ՖՐԱՆՍ-ԱՐՄԷՆԻ» ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԸ

Մեր ընթերցողներին յայտնի է, որ «Ֆրանսացոց ու օտարազգիների բարեկամութեան Դաշնակցութիւն (Féderation des Amitiés Franco-Etrangères) ընկերութեան նախաձեռնութեամբ կազմուած է մի նոր յանձնաժողով Ֆրանս-Արմէնի, այսինքն Ֆրանսիա-Հայաստան, որի նպատակն է պաշտպանել Ֆրանսիոյ շահերը Արեւելքում, ինչպէս և Հայերի ազգային պահանջները։

Ահա այդ նոր յանձնաժողովի անդամների անուանացուցակը.

Պատուակալ Նախագահներ՝ Ժորժ Գլեմանսօ ծերակուտական, նախկին վարչապետ, նախագահ արտաքին գործերի Ծերակուտական յանձնաժողովի.

Դընի Կոշէն, Պետական նախարար.

Անատոլ Ֆրանս, Անդամ ֆրանսական ճեմարանի.

Է. Լամի, Անդամ ֆրանսական ճեմարանի

Ժորժ Լէյկ, Երեսփոխան, երբեմն նախարար, նախագահ արտաքին գործերի Երեսփոխանական յանձնաժողովի.

Բ. Դենըլվէ, Նախարար Հանրային Կրթութեան։

### Վարչական յանձնաժողով.

Նախագահներ՝

Լուի Ռընօ, Լիազօր դեսպան (Ministre plénipotentiaire), ուսուցչապետ Իրաւագիտութեան մասնաճիւղի.

Ալբէր Սառօ, Երեսփոխան, Նախորդ Նախարար Հանրային Կրթութեան.

Փոխ. Նախագահներ՝ Էդիէն Ֆլանտէն, ծերակուտական, անդամ արտաքին գործերի Յանձնաժողովին.

Գէրնիէ, Երեսփոխան, ուսուցչապետ Լիլի Իրաւագիտութեան մասնաճիւղի, անդամ արտաքին գործերի Յանձնաժողովին.

Ռ. Ժօրժ-Լեվի, Անդամ Բարոյական և Քաղաքական գիտութեանց ճեմարանի.

Մէյէ, ուսուցչապետ Ֆրանսիոյ կոլէջին.

Ժոզէֆ Ռէնաք, Նախորդ երեսփոխան.

Ընդհանուր քարտուղար՝

Ռընէ դը Շաւայն, Հիմնադիր «Ֆրանս և օտարականների բարեկամական Դաշնակցութեան»։

Օգնական քարտուղար՝

Ֆ. Մաքլէր, Հայերէնի ուսուցչապետ Արեւելեան լեզուների վարժարանի։

Գանձապետ՝

Էսքոֆիէ, Կրէյդի Լիօնի դրամատան վարիչ։

### Քաղաքական և Տնտեսագիտական յարաբերութիւններ

Կոմս Դ' Օնէ, ծերակուտական, նախագահ ֆրանսական շահերին Արտասահմանի մէջ պաշտպանութեան խմբակին.

Է. Կարնօ, Մեսաժըրի Մարիտիմ շոգենաւային ընկերութեան վարչական ժողովի անդամ.

Անդրէ Շէրատամ, Հրապարակագիր

Պօլ Էսկիւդիէ, Երեսփոխան Սէնի, Փեր-Նախագահ արտաքին գործերի Յանձնաժողովին.

Լուի Մարտէն, ծերակուտական, անդամ արտաքին գործերի Յանձնաժողովին.

Ռընէ Բինոն, Հրապարակագիր.

Վլաստօ, Հիմնադիր «Կոնկուռ տ' Էսկոնտ»ի։

### Մտաւորական յարաբերութիւններ

Պօլ Ադամ, գրական մարդ.

Տիկին Ս. Անդրէ, Նախագահուհի Ֆ. Օ. Բ-ի ծաւալման (propagande)

Պօլ Պուայէ, վարիչ (administrateur) Արեւելեան լեզուների վարժարանի.

Անրի Կուլոն, փաստաբան Պարիզի վերաքննիչ ատեանին.

Շ. Դիէլ, Անդամ արձանագրութեանց և գեղեցիկ դպրութեանց ճեմարանի.

Է. Դումէրկ, դահերէց Մոնտոբանի Աստուածաբանական մասնաճիւղի.

Ժ. Ֆինօ, Տնօրէն «R vue» հանդէսին.

Տիկին Կ. Գոլի, Հրապարակագիր.

Ֆ. Հէրոլդ, Փեր-Նախագահ «Մարդկային իրաւունքների ընկերութեան»

Է. Լալուա, Երաժշտական քննադատ.

Տիկին Մենար-Դորիան.

Գաբրիէլ Մուրէ, Արուեստագիտական քննադատ, Կոմբիէյնի պալատին պահպանութեան հսկող պաշտօնատար.

Ռեբիլիօ, ուսուցչապետ Ֆրանսական կոլէժին.

Է. Սենար, Անդամ Արձանագրութեանց և գեղեցիկ դպրութեանց ճեմարանի.

Շլիւմբերժէ, Անդամ Արձանագրութեանց և գեղեցիկ դպրութեանց ճեմարանի.

Է. Սէալլ, ուսուցչապետ Սորբոնի։

* * *

ՖՐԱՆՍ-ԱՐՄԷՆԻ Յանձնաժողովի
Ա. ժողովին (29 յուլիս 1916)
ԱՄԻՏԻԷ ՖՐԱՆԿՕ-ԷՏՐԱՆԺԷՐ
Դաշնակցութեան հիմնադիր
եւ ընդհանուր քարտուղար
Դ. ՌԸՆԷ ԴԸ ՇԱՎԱՅՆԻ
ճառին ամփոփումը

Տ. Ռընէ Դը Շավայն ասեց, թէ մեծ պատիւ է համարում իր համար, որ Դաշնակցութեան Նախագահ Դ. Անատոլ Ֆրանսի բացակայութեան միջոցին իրեն է թողնում խօսել Դաշնակցութեան կողմէն և ցոյց տալ նորակազմ «Ֆրանս Արմէնի» յանձնաժողովի նպատակը։

Յարգանքի մի ողջոյն Տիկին Ս. Անտրէին ուղղելէ յետոյ և Ն. Վ. Պօղոս Նուպար փաշային, յիշեց անցած ապրիլ ամսին մէջ ի պատիւ Հայաստանի։ Դաշնակցութեան կազմակերպած Սորբոնի ցոյցը և Դումայի պատուիրակութեան Պարիզէն անցած ատեն եղած ընդունելութիւնը, որի միջոցին Հայերին ի նպաստ համակրական ցոյց եղաւ։

Յետոյ ներկայացրեց Հայաստանի փառաւոր անցեալը և այն անջնջելի իրաւունքները, որ նա շահած է վայելելու համար քաղաքակիրթ աշխարհի պաշտպանութիւնը, երախտագիտութիւնը, ինչպէս նաև դարերէ ի վեր իրեն հասած բոլոր դժբաղդութիւնների արդար հատուցումը։

Այս առիթով ակնարկութիւն արաւ Փոքր-Ասիայի մէջ ռուսական վերջին յաղթութիւններին, որոնք Հայերի վերջնական ազատագրման նախաբանն են։

Շարունակեց շեշտելով՝ թէ պէտք է այս պատերազմի վերջը հայկական խնդրին այնպիսի լուծում տալ, որ Հայերի օրինաւոր ցանկութիւններին գոհացում տրուած լինի, մանաւանդ որ իրենց շահերը կը միանան դաշնակիցների շահերին և Ֆրանսիոյ ու Հայաստանի միջև իննը դարերէ ի վեր հիւսուած կապերը այնչափ սեղմուած ու ամրապնդուած են, որ հայկական պահանջները ոչ միայն չեն հակառակիր ֆրանսական տեսութիւններին, այլ և կատարեալ ներդաշնակ են։

Ուրեմն Ֆրանս-Արմէնի յանձնաժողովը շատ դիւրութեամբ պիտի կարողանայ մի ծրագիր հաստատել ֆրանսական և հայկական միասին գործունէութեան համար Արևելքում, այսինքն շահագործելու Փոքր-Ասիայի բոլոր նահանգները, հայկական բարձրաւանդակները մինչև Միջերկրական ծովը, ուր գործում է Ֆրանսիոյ օրինաւոր և բարերար ազդեցութիւնը։

* * *

Հայ Ազգային Պատուիրակութեան Նախագահ
և Նորին Սրբութիւն Ամենայն Հայոց
Կաթողիկոս Գէորգ Ե-ի ներկայացուցչին
Եւրոպայի մէջ Ն. Վ. ՊՕՂՈՍ ՆՈՒՊԱՐ փաշայի
ճառի ամփոփումը

Դ. Դը Շավայնի ճառէն յետոյ՝ Հայ Ազգային Պատուիրակութեան նախագահ Պօղոս Նուպար փաշա խօսք առաւ և մի կարճ ճառով շնորհակալութիւն յայտնեց «Ֆրանսական և Օտարազգի բարեկամութեան Դաշնակցութեան», որ «Ֆրանս-Արմէնի» նոր ճիւղը կազմելու նախաձեռնութիւնն ունեցաւ։

Ակնարկելով Հայաստանի արիւնահոս վերջին դէպքերին՝ վստահութիւն յայտնեց, թէ Հայերը, որոնք ամեն ժողովուրդներէ աւելի հալածուեցան ու ճնշուեցան, անգամ մը ևս պիտի ազատուին այս վերջին փորձէն ալ, թէև ջախջախուած ու ընկճուած, բայց ոչ ջնջուած, և աւելի քան երբեք պատրաստ պիտի լինին իրենց դարաւոր պաշտօնը կատարելու, Արևելքում քաղաքակրթութեան գլուխն անցնելով։

Իրենց պահանջները նոյնչափ համեստ են որչափ խելացի, և համոզուած են թէ անկարելի է որ խաղաղութեան վեհաժողովին մէջ հայոց խնդիրը արդարացի լուծում չստանայ, երբ տառապած միւս բոլոր ժողովուրդների խնդիրները կը կարգադրուին։

Վստահ են Իրաւունքի, Արդարութեան և Մարդասիրութեան զգացումներին վրայ, որոնք պիտի յաղթանակեն այս պատերազմի լրանալուն և որոնք տկարների յաւիտենական պաշտպան ասպետական Ֆրանսիոյ աւանդութիւններն են։

Բ.

## ՊՕՂՈՍ ՆՈՒՊԱՐ ՓԱՇԱՅԻ ՆԱՄԱԿԸ JOURNAL ՕՐԱԹԵՐԹԻՆ

Պարիզի «Ժուռնալ» օրաթերթը, պատերազմի երկամեակը լրանալու առիթով, զանազան անուանի անձնաւորութեանց դիմելով՝ խնդրել էր Ֆրանսիոյ բարոյական վիճակի մասին իրենց ունեցած տպաւորութիւնը համառօտակի գրել։ Իր այդ դիմումին յօժարութեամբ պատասխանուած և պատասխանները «Ժուռնալ»ի մէջ հրատարակուած լինելով, օգոստոս 3-ի թուին մէջ ալ հրատարակուած են Անգլիոյ պատերազմական նախարար Լորդ Ջորջի, Պորթուգալի պատերազմական նախարար Դ. Նորդոն դը Մաթոսի, Թունիսի բէյի և Հայ ազգային պատուիրակութեան նախագահ Պօղոս Նուպար փաշայի համակրական նամակները։ Ահա այս նամակի թարգմանութիւնը.

Պարիզ, 2 օգոստոսի

Ինչ որ մենք Հայերս մտածում ենք Ֆրանսիոյ իր կատարած ջանքերի և երկու տարի պատերազմելէ յետոյ աշխարհի առջև իր ցոյց տուած բարոյական վիճակի մասին, ինչ բառերով պէտք է ըսել որ կարենան ճշտութեամբ ներկայացնել մեր մտածմունքը, մենք՝ որ Արևելքի ժողովուրդներին մէջ մեր հանգիտութիւններով, մեր ճաշակներով և մեր զգացումներով դէպի Ֆրանսան ձգտել ենք միշտ։ Խնդրած ենք միշտ իր քաղաքակրթութեան դաստիարակութիւնն ու բարիքները, որ ըմբռնելու և որոնցով սնանելու ջանացած ենք. և իր շրջագծին մէջ է որ իմ ազգակիցներս մտաւորապէս ապրած են։ Ուրեմն որչափ աւելի մեր հիացումը ուղղուած է այսօր դէպի Ֆրանսիան, այն դիւցազնութեան, հայրենասիրական միութեան և բարոյական մեծութեան տեսարանէն յետոյ՝ որ երկու տարուց ի վեր ցոյց է տալիս տիեզերքին՝ հիացնելով։

Հայերը, որոնց համար ասուած է, թէ Արևելքի ֆրանսացիներն են, որոնք միշտ ապրած են Ֆրանսիոյ մշակոյթովը (culture) և ջանացած են իւրացնել այն, որոնք Խաչակիրների դարերէն ի վեր իրենց արիւնը խառնած են Ֆրանսիոյ զաւակների արեանը, նրանց կողքին կանգնած կռուելով միևնոյն հաւատքի և միևնոյն գերակայի (idèal) համար, որոնք ֆրանսական ծագումէ թագաւորներ ունեցած են, որոնց վերջինը հանգչում է Սէնդընիի դամբարանում Ֆրանսիայի թագաւորներին մէջտեղ, այժմ աւելի քան երբէք հիացմամբ և ջերմեռանդութեամբ տոգորուած են այս մեծ և գեղեցիկ Ֆրանսիայի, Ազատութեան, Իրաւունքի և Արդարութեան նուիրական վառարանին համար.

(«Արմէնիա»-ից քաղուած).

---

## ՖՐԱՆՍԱՑՈՑ ԹԵՐԹԵՐԸ ՏԱՃԿԱՀԱՅՑ ՄԱՍԻՆ

C. Séail os գրում է «La Depêche»-ում.

«Ներկայ աշխարհասասան պատերազմի զոհերի միջև ոչինչ այնքան սրտառուչ և աւելի ողբալի չէ, քան Հայաստանը։ Նա պատերազմի սարսափներից ա ւ ե լ ի ն է ճաշակել—անզէն, առանց հնարաւորութիւն ունենալու դիմադրելու, նա յանձնուել է դահիճների ձեռքը։

Տղամարդիկ, կանայք, երեխաներ, ծերեր, խմբերով կոտորուեցին՝ բնաջնջման սիստեմատիկ ծրագրով...

. Հայաստանը ճշգրիտ սահմաններ չունի, բայց և այնպէս նա մի հայրենիք է, որովհետև հայերն իրենցից ներկայացնում են մի ժողովուրդ, թէկուզ յաղթահարուած, ընկճուած օտար լծի տակ, սակայն նրանք բարոյական անկախութիւն են ձեռք բերել լեզուի միութիւն, զգացումների եղբայրակցութիւն, իրենց ազգային կրօնի և դեմոկրատ եկեղեցու միութիւն են պահպանել։

Տառապանքը դեռ չի նշանակում, որ կեանք չէ—նա կեանք է, այո, թէկուզ դանդաղ, ցաւատանջ, մշտասարսուռ, բայց ոչ բոլորովին յուսակտուր։ Հայաստանի դժբախտութիւնը նրանումն է, որ նրա գոյութիւնը խոչընդոտ էր հանդիսանում Գերմանիայի հսկայական ծրագիրներին։ Հայաստանն է այն ճանապարհը, որ Կովկասից առաջնորդում է դէպի Իսկենդերուն, այդ լայնանիստ ու լաւ պատսպարուած նաւահանգիստը, որ Ռուսաստանի հաւանական ելքն է կազմում դէպի ազատ ծովը։ Սակայն Իսկենդերունը քաղաքը միացնելով Բաղդադի երկաթուղուն, պէտք է դառնար գերմանական քաղաք, «Միջերկրականի փոքրիկ Համբուրգը»... Պէտք է փակել ռուսների ճանապարհը, նրանց առաջ կանգնեցնել թշնամի ժողովուրդների մի պատուար, որի համար պէտք էր հայերին վանել իրենց երկրից՝ նրանց փոխարինելով մահմեդականներով ու գերմանական գաղութով...

Մեր վճիռը վաղուց է կայացուած, կարիքն աւելի յստակ և աւելի հրամայական է դարձնում մեր սահմանած պարտականու-

թիւնը։ Այս փորձութեան ժամանակ մենք պէտք է ամուր կառչած մնանք մեր յանձնառութիւններին։ Մենք պիտի մնանք ժողովուրդների իրաւունքների ախոյեանը»։

De Waleffe գրում է «La Journal de Paris-Midi»-ում.

«Էնւեր-փաշան, այդ վայրենաբարոյ մարդասպանը, պէտք է բաց աչքով տեսնէ հայկական վերածնունդը, ինչպէս Կոբուրգեան Ֆերդինանդը պիտի տեսնէ սերբիական ազգի վերականգնումը...»

Henri Goulon ասում է «La Rappel»-ում.

«Հայաստանի անունը միայն վերարտադրում է մեր յիշողութեան մէջ այն բոլորը, ինչ գեղեցիկ ու արդար է ամենայետամնաց քաղաքակրթութիւն ունեցող մի երկրում։ Համաձայնութեան Պետութիւնները պէտք է Հայաստանի նկատմամբ ստանձնեն այն հանդիսաւոր պարտաւորութիւնը, ինչ որ արդէն ստանձնել են միւս բոլոր ճնշուած ժողովուրդների նկատմամբ։ Սկսուած մեծ պատերազմը չպէտք է վերջանայ, քանի դեռ Հայաստանի ինքնավարութիւնը ու անկախութիւնը վերջնապէս չապահովուին...

Այժմուանից պատուոյ յանձնառութիւն պիտի վերցնել առաջիկայ հաշտութեան պայմանագրում մտցնելու հայկական վեց նահանգներից և Կիլիկիայից կազմելու մի մեծ գաւառ իր առանձին օրէնսդրութեամբ և գլխաւորութեամբ եւրոպացի մի ընդհանուր նահանգապետի՝ լիազօր իրաւունքներով Համաձայնութեան Պետութիւնների հսկողութեան տակ։

Միայն այս ձևով կը բաւարարուեն Արդարութիւնը, Իրաւունքն ու Ազատութիւնը»։

Չենք կարող լռութեամբ անցնել և Օրլէանի արքեպիսկոպոս Touchet-ի պերճախօս ճառի վրայից, արտասանուած Պարիզի Մադլէն եկեղեցում հայկական հարցի մասին, կարդինալ Ամիթի, Ֆրանսիայի ամբողջ բարձրաստիճան հոգևորականութեան և բազմաթիւ ականաւոր ունկնդիրների ներկայութեամբ։

Համառօտակի պատկերացնելով Հայաստանի դրութիւնը, Touchet ասաց. «Եւրոպան թող մտածէ Հայաստանում թուրքերի գործած վայրագութիւնների մասին։ Ո՛չ թէ այս ոճիրները, այլ մի աննշան անարդարութիւնը վրէժխնդիր մի խաչակրութիւն ոտքի կը հանէր 800 տարի առաջ։ Գերմանիան յաւիտենապէս դատապարտուած պիտի մնայ այս վայրագութիւններին իր մեղսակցութեան համար, և դաշնակիցների պարտքն է ազատութիւն շնորհել Հայաստանին»։

Սուրէն

—

Շվէյցարիայից գրում են, որ այնտեղ աշխատում են միջոցներ որոնել՝ բանալու համար Սալմաստում շվէյցարական մի որբանոց 25 հայ որբերի համար։

## Գրական-Գիտական

### ԳԱՐՈՒՆ

Ահա խոր քնից արթնացել է գարուն,
Զարթել է հովիտ ու անտառ,
Բեհեզ են հագել ծաղիկներ զարդարուն
Եւ սէր են բուրում անսպառ։

Կոհակ առ կոհակ թաւալում է առուն,
Մռնչում ու առաջ է վազում,
Ուռին ծածանում է հիւսերն երերուն,
Նիրհում է ու սէր երազում։

Աստղերը սիրուց դողդողում են շողում,
Երկիր են նայում թախծագին,
Եւ վարդը չեկնոտ արտասուք է ցօղում,
Կարօտ սիրահար սոխակին։

Եւ սէր է շնչում տերևերքն ալեոր,
Եւ կեանքը ծաղկում է դալար,
Ախ ես եմ միայն տառապում սգաւոր
Եւ երգ եմ հիւսում տխրալար։

Ռ. Խոջա-Մուրադ

### Շ Ի Ր Ի Ն Ը

(1896-ի քսանամեակին)

Ծերուկ մաճկալը կանչեց. Հօտաղներ, բերէք գոմէշները, կէսօրն անցաւ։

Գութանը լծեցին, վարը վերսկսեց և աշխատանքը կենդանացաւ արտին մէջ։

Մաճկալն ազդարարում էր, հօտաղներն երգում էին, գոմէշները փնչում, եզները տնքում, ակները լալիս էին և ճռընչում.—կազմւում էր մի համերգ, աշխատանքի նախնի երգը սրբազան։

Անուշ, մանկական ձայնը թրթռաց խուրիկվարին.

«Մնձէ գութան, մնձէ գութան,
Դեռ չը ոժած
Ակներ եռե, ճռճռալէն
Կ'երթան, կ'երթան
Կնքտեր գացին, հա՛ բէր[1]) կը տան»։

Բէրուորհիների կարմրազգեստ շարանը անց էր կենում, նրանք մտնում էին, գուլպայ հիւսում և ճլպշտալով շաղակրատում։ Նրանք զմայլւում էին նայելով գութանին, իր զարկան Շիրինին[2]) և խուրիկի խաժաչուի հօտաղին, որ ժպտում էր չարաճճի։

—Հա՛յ քու պատանք կարեմ, կարծես կը վախենա՛մ քու Շիրինից։

—Համ կը վախենաս, համ լեղապատառ կ'ըլնիս, պատասխանեց հօտաղը։

Գութընուորները պարծենում էին և ուռչում. զուարճալի էր մտածել, որ բէրուորուհիները թէ սարսափում են և թէ սաստիկ հետաքրքրւում Շիրինով։

«Ջիւորցաւ, ձիւորցաւ,
Ջիւոր իր ձին հեծաւ,
Էնա սև կռուան չը հասաւ»։

Փնչում էր Շիրինը և եզները թռչում էին, սարսափած եռեւից ծակող կեռ կոտոշներից։ Շիրինը շրջանի ամենադարհուրելի գոմէշն էր, նրան չորս հօտաղները և վզից կախուած միթխարի կոճը դեռ բաւական չէին զսպելու, որ իր բռնով (գլխի հարուած) գետին չը փռէ բոլոր կռուաններին և մարդկանց։ Նա վտանգաւոր զարկան էր։

Փոքրիկ խուրիկվարը ախ քաշեց, նախանձով դիտում էր երեխաներին, որ մեծ առուի ափին վազվզում էին հօտում, և այծերի եղջիւրներից բռնած՝ բերում էին մայրերին՝ կթելու։ Յետոյ չլտւում էին և թռչում խոշոր առուի մէջ, չղչփում, իրար ջրցընում սուր ճիչերով։

Ստուերները կախուեցին լեռներից, բէրը վերջացաւ, հօտը

1) Բէր=ոչխար կթել, բէրուոր, բէրուորուհի=ոչխար կթող կին։
2) Գոմշի անունը։

դաշտն իջաւ և բէրուորուհիները՝ տուն։ Յանկարծ ամոլվարը նըկատեց, որ մռայլուել է Շիրին, վիթխարի գլուխը շարժում է անհանգիստ։

«Շատակեր է քչկապաշար,
Կռուան ընկեր կարիք աշխարհ»։

Բայց ոչ, շատակեր Շիրինը անօթի չէր։ Մարդկային իմաստութեան անթափանց իր անասնական բնազդով՝ նա հոտոտում էր ոճիրը՝ որ սկսում էր ծաւալուել օդում։

Տրաք, տրաք, տրաք... սկսեցին պայթել հրացաններ ամեն կողմից։ Գութընուորները շշկլուեցին։ Կոտորած է, քրդերն սպանում են հայերին։

Չը գիտես ինչո՛ւ, Աստծու պայծառ արևը յանկարծ գժգունեց. շողերն արիւնուեցին աղօտ, քրտնքի տապը փոխուեց մահասարսափ սարսուռի, ու նրանք փախան, փախան առանց մըտածելու դէպի ուր։

Սարսափը անհետ մթագնեց բանականութիւնը. նրանց ոտները վազում էին բնազդօրէն, ամեն կողմից թշնամիներով օղակուած, հանդիպում էին գնդակների, խանչէրների։

Դեռ մի քանի վայրկեան առաջ արևը փայլում էր, միջատները բզզում, աշխատանքը երգում էր դաշտում և գիւղում, բայց հիմա ինչ է կատարւում, Տէր Աստուած։

Լսւում էին խուլ և թունդ պայթիւններ, շաչում էին սրերը, վզվզում էր գնդակը մահաբեր, գոռգոռում էին մարդասպանները մոլեգնած, հեծում էին մեռնողներն օրհասական և բզզում էր մի համերգ, ոճրի երգը խժալուր։

Իսկ չարճակուած գութանը մնաց արտի մէջ։ Անասունները զարհուրած, խրտչում են ամեն ուղղութեամբ, յետոյ ապշում են և մնում անդնուանդ։ Շուրջը աւերւում են գիւղեր, խորտակւում կեանքեր, քանդւում աշխատանքը, պղծւում սրբութիւնը և թագաւորում է ոճիրն ամենազօր։

Արնոտ տապարը ուսին, քիւրդ Կաֆուրը մօտեցաւ գութանին։ Նրա չեչոտ երեսը ծածկուած էր թաւամազ մօրուսով. իր արընխառն աչքերը չռեց Շիրինի վրայ։

—Սարսափելի գոմէշը այս է։

Շիրինը հասկանում է ամեն բան... այ թէ այս երկաթէ սամին չը լինէր...

Կաֆուրը հասկացաւ Շիրինի հրացայտ աչքերի միտքը, որ կատաղութիւն էր եռում, և յանկարծ մի ծանր հարուած իջաւ կռուանի կռնակին։

Այն տեղն գերագրգռուեց Շիրինի կատաղութիւնը զարհուրելի, խելառ թափով փշրեց սամին, և խոյացաւ թշնամու հետեւ։ Միւս անասունները նայում են ցնորած, աչքերը դուրս է պոռթքում ակնակապիճներից։

Կաֆուրը երկու քայլ չկարողացաւ առնել։ Շիրինի հսկայական կոտոշը նրան բերաններայր փռեց գետին, կոտոշները ջարդեցին ողնաշարը և գոմէշն, իր կատաղի թափի հետ, թշնամու դիակից տաս քայլ հեռու նետուեց։

Կռուանը թարմացաւ, իբր թէ գարնան խամահանէան է, հինգ ամիս խաւարում պահելուց յետոյ, ծանր կոճը վզից քաշ, դուրս են հանում ութ հոգով, կողքերից բռնած, պարանոցից և կողերից նախշուն խաչեր կախած, մի ձու են փշրում ճակատին, և պախուրցից զգոյշ բռնած թողնում են գլխով փուլ անելու՝ ամիսների կուտակած ուժի կիրքը եռում է կոտոշների ծայրին և փըլատակում է թումբերը խօլաբար։

Ետ դարձաւ, գլուխը դրեց թշնամու կռնակին և քրքրեց անողորմ։ Դիակի բեկ-բեկ մասերը կոտոշների վրայ, Շիրինը գըլուխը բարձրացրեց, նայեց հեռո՜ւն, կապոյտ անյայտին և զռաց ողորմագին։ Նա շնչում էր արիւնի հոտը և ցնորւում, ռունգերը ուռցրած, վերի շրթունքը կպցրած քթին և վարինը կախ, ատամները պիրկ, դէմքը սոսկալի կնճռած, նա հոտոտում էր արիւնը և հարբում նրա տաք գոլորշիով։

Քրքրում է նա կաֆուրի դիակը պղծակերտ, փուլ է անում և չի յագենում։ Կարծես անտէր ցեղի ամբողջ վրէժը դուրս է պոռթկում այս մի զոյգ կոտոշներից։ Յետոյ նա զռռում է, զռռում են և կռուանն ու եզները։ Քիչ յետոյ Շիրինը ծարաւ ու թուլցած կռնակի վէրքից, վազում է դէպի ջուր, խմում է ու նստում առուի մէջ։

Իսկ գութանը մնում է արտում և պառկում ինք իր վրայ, առանց տեղից հեռանալու, մինչ շուրջը ծխում է աւերը, բռնչում է ոճիրը....

Մաճկալը պահուած է մացառների տակ, այնտեղ լալիս է իր հօտաղների կեանքերն մատաղատի և սեփական կեանքի երկիւղից քարանում։ Նրա սիրտը թրթփում է ամեն մի ոռնաձայնից ու նա լողում է մահուան պաղ քրտինքի մէջ։

Երեկոյեան կողմ, մօտակայ քիւրդ գիւղի նախորդն ու տղան նրան գտան. երկաթէ երկար շամփուրներով վրայ ընկան, կողն ու կուշտը ծակծկեցին, դատարկ քսակը ծոցից հանեցին և հայհոյելով հեռացան։ Ծերուկը փախչելու կամ դիմադրելու ոչ մի փորձ չարեց, կարծես սպասում էլ էր, և աչքերը փակեց, որ չը տեսնի ինչպէս է ծակծկւում սեփական մարմինը։

Կէս գիշերին ծերուկն սթափուեց. նա լողում է թանձր ու լպրծուն հեղուկում, յետոյ նա զառանցում է։

...Գութընուորները քնել են արտում. Հայկը (Օրխան) բարձրացաւ և հօտաղը անասուններին տարաւ արածելու։ Մաճկալը ակոսում պառկած՝ նայում է և ականջ դնում։

Վերից պսպղում են աստղերը, վարից ծանր շնչում են և փնչում գոմէշները խոտերի մէջ։ Լսւում է ջրի փշշոցը և հեռաւոր գետակի խշշիւնը։ Ա՜խ, ինչ քաղցր թախիծ է բերում այս ընտանի խշշոցը։ Ճռճռում է անհամ արշալոյսը, մաճկալը վեր է կենում, հօտաղներին ձայնում, և մօտակայ առուակի մէջ հագիւ լուացուած՝ հասնում են նրանք և գութանը լծում։ Երեսը դէպի նորածագ արևին, աղօթում է մրմունջով մաճկալը բազկատարած, իսկ խուրիկվարը գեղգեղում է իր նախերգը հոգեզմայլ.

«Առաւօտուան աստղն երևաց,
Բարի լուսու դռներն ա բաց,
Դեռ մաճկալի ձեռներն ա թաց,
Հանենք սարուածք, լծենք գութան,
Բարով բացուի լոյս-աղօթրան»։

Ծերուկը ոտը դնում է մաճին.—Օրհնեա՜լ է Աստուած, քաշի հառաւէ՜լ։

«Կռուան ընկեր աջին ական,
Շարեց շարմարական,
Էտու աջև արև-արեգական,
Աստուած քե օգնական-պահապան,
Քաշի, հառաւէ՜լ»։

Թարմ ակոսից բուրում է հողի խոնաւ բոյրը, գութանը ճռճռում է ու վարում։ Հօտաղները քշում են և երգում, ճռռողում են և զմայլւում, սահելով երազանքի անհուն երանութեան մէջ։

Աղօթարանը բացւում է, բայց, Տէր Աստուած, հօտաղները չկան, չեն գալիս։ Սեփական վիճակի գիտակցութիւնը փայլակի նման լուսաւորեց մաճկալի ուղեղը, և նա նուաղեց։ Երբ մէկ էլ սթափուեց, բարկ արևը վառում էր գետինը, քաշքշուեց նա մինչև առուն, խմեց, խմեց և մեռաւ։

Կէս օրուան կողմ թալանողները գութանը քշեցին տարան։

* * *

Կոտորուած գիւղի ընդարձակ դաշտի լռին ամայութեան մէջ Շիրինը մնաց ինչպէս մի վիթխարի բու, որ ցերեկները նըստում էր խոտարատում և պոչով հալածում աներես ճանճերին։ Քրդերը սարսափում էին նրա մօտով անց կենալուց և ճանապարհը փոխում էին։ Նապաստակի պէս փախչում էին նրանից

բոլոր անտէր կռուանները։ Իսկ գիշերներ նա թափառում էր մենակ և գոռում։ Գոռում էր տարերայնօրէն կատաղի, և երբ շնչում էր գիւղների նեխահոտը, դէմքը այլայլւում էր և ծալ-ծլւում ողորմագին։ Իսկ զարհուրած թռչնիկը ականջ էր դնում իր բնից՝ այս մենակ ու անտէր աղաղակին։

Արտաշէս Բաբսեղեան

## ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

Ստացանք Կ. Հ. Բ. Ը-թեան մի նոր հրատարակութիւնը պ. Ա. Փարեմուզեանի կազմած «Թէ ինչպէս պէտք է գրադարան-ընթերցարանները հիմնել և կառավարել»։ Խորհուրդ կը տայինք գաւառներում գրադարան-ընթերցարան հիմնողներին, որ առաջնորդ ունենան այս գրքոյկը, որ շատ կարևոր է նման հաստատութիւններ բանալու և ղեկավարելու համար։

## ԱՐԵԳԱԿԸ ԼԾԻ ՏԱԿ

Ածուխի սպառումը տարէցտարի սաստկանում է և շատ երկիրներում այդ հանքի պաշարը վերջանում է։ «Սպիտակ ածուխի» մթերքները—ջրերի շարժիչ ուժերը—ևս անչափ չեն։ Սոյն հանգամանքը հերթական դարձրեց արեգակի զօրութիւնից օգտուելու խնդիրը։ Այդ կարևորագոյն խնդրի լուծումը տակաւին դեռ լիակատար կերպով ստացուած չէ, բայց որ գործը դատարկ բաների մասին չէ, դիւրաւ երևում է հետևեալ տուեալներից. արևի ճառագայթները, 370 քառ. քիլոմէթր տարածութեան վրայ ընկնելով (Լոնդոնի մակերևոյթի չորրորդ մասից քիչ պակաս) ունեն 270 միլիոն ձիու ուժ այնքան, որքան տալիս է երկրագնդի վրայ ածուխի հանքերը և հանքային իւղերը։

Ամերիկացի Ֆ. Շուման առաջինն է, որ գործնական կերպով ցոյց տուեց արեգակի զօրութիւնից օգտուելու հնարաւորութիւնը։ 1912 թուի սեպտեմբերից գործում է Գահիրէում նրա արեգակնային ուժի կայարանը։ Գործիքի մասերն են մի մակոյկաձև ճառագայթների ընդունարան և շոգեկաթսայ։ Մակոյկի երկարութիւնը—61 մեթր է, իսկ լայնութիւնը՝ 4 մ.։ Մակոյկի գոգաւոր մասը դարձուած է արեգակի կողմը և կազմուած բազմաթիւ հայելիներով, որոնք ճառագայթները ուղղում են կիզակէտի մէջ (фокусъ), ուր շոգեկաթսան զետեղուած է ցածր ճնշականութեամբ։

Փորձը ցոյց տուեց, որ այդպիսի գործիքի 10 ժամուայ աշխատանքը տալիս է 500 քիլոգրամ շոգի, մօտ մի մթնոլորտ ճնշման տակ, այսինքն մօտաւորապէս 10 ձիու ուժի աշխատանք։

Մօտ 18000 ռ. արժէցող այսպիսի մի գործանոցը կարող է մրցել ածուխով աշխատողին հետ, եթէ երբէք նրան փոխարինող ածուխի տոննը արժէ ոչ պակաս քան 5—6 ռ. (պուդը մինչև 10 կ.)։ Արևադարձային երկիրներում, ուր ածուխը առհասարակ շատ թանգ է գնահատւում և արեգակը շատ աւելի տաք է, ուժի մեքենան կատարելապէս մի շահաւէտ ձեռնարկութիւն է։ Այսպիսով ամեն հիմքեր կան մտածելու, որ մարդը ժամանակին պիտի յաջողի արեգակին լծի տակ դնելու և հարկադրելու նրան աշխատելու իրա օգտին։ Այս խնդիրը անշուշտ գործնականապէս շուտով կը վճռուի։

# Մատենախօսութիւն

## ՎԱԼԵՐԻՅ ԲՐԻՒՍՈՎԻ ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆԸ ԱՄՖԻԹԷԱՏՐՈՎԻ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՀՌՈՎՄ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՆ

Անցեալ անգամ պատիւ ունեցայ ուղարկելու «Համբաւաբերին» մի մատենախօսութիւն պ. Ամֆիթէատրովի «Հայաստան և Հռովմ» գրքի մասին։ Ի լրումն յօդուածիս պատշաճ եմ համարում մէջ բերել այժմ Վալ. Բրիւսովի մատենախօսութեան քանի մի հատուածները, որոնք լոյս տեսան «Русская Мысль» ամսագրի յունիսի համարում։ Նորա քննադատութիւնը թէև բանաստեղծական ոճով է տոգորուած, սակայն բաւականին խիստ է և սկսւում է այսպէս. «Հայաստանի պատմութիւն—ինչպիսի՜ ճոխ թեմա է պատմագրի և մատենագրի համար։ Տակաւին թոյլ մշակուած մատենագիտական երկերում անգամ Հայաստանի պատմութիւնը ռուս ընթերցողների մեծագոյն մասի համար, հաւանական է, յայտնի չէ բնաւ։ Բացի Կ. Կոստանեանցի հակիրճ գրուածքից, որ հրատարակուեց անցեալ տարի (Армянскій сборникъ-ում) և նուիրուած է յատկապէս հին Հայաստանին, մեր գրականութեան մէջ չկայ սոյն թեմային վերաբերեալ և ոչ մի երկ, որ մատչելի լինէր ընթերցողների լայն շրջանին։ Կան, հարկաւ, գիտնական պատմագրների անչափ գնահատելի հետազօտութիւններ, որոնք սակայն պահանջում են արդէն նախնական պատրաստութիւն. կան յօդուածներ հանրագիտական բառարաններում, բայց չոր ու ցամաք են և մինչև անգամ սակաւ հասկանալի տարրական անգիտակների համար. կան, վերջապէս, քանի մի հանրամատչելի գրուածքներ, սակայն բոլորովին հնացած, երբեմն ծիծաղաշարժ ու միամիտ, ինչպէս օր. Իվ. Շոպէնի գիրքը (1852 թ.)։ Մինչդեռ ռուս ընթերցողը ունի տասնեակ գեղեցիկ ձեռնարկներ ծանօթանալու համար՝ էլ չենք ասում հնագոյն աշխարհի պատմութեանը, այլ և հին Եգիպտոսի, Ասորեստանի, Հրէից, նախնական Ամերիկայի և այլոց,—ուստի՞ քաղենք տեղեկութիւններ Հայոց պատմութեան մասին, կամ պէտք է դիմել օտարազգի գրականութեանց, որոնք, այս ուղղութեամբ, հարուստ են միայն յարաբերաբար։

Այնինչ ինչ անսպառ գանձ ունի մի ազգի պատմութիւնը, որ, ընդգրկելով երկու և կէս հազար ամեակ (VII դարուց նախ քան Քրիստոս մինչև մեր օրերը) սերտ կապուած է համայն ծանրակշիռ երևոյթների հետ, որոնք զգրգացրին հին աշխարհը։ Հայաստանը յիշւում է դեռ'ս Աստուածաշունչ գրքում, ուր Երեմիա մարգարէի բերանով Արարատեան թագաւորութիւնները [1]) կոչւում են մասնակցելու Բաբելոնի կործանմանը։ Հայերը իւրեանց պատմութեան արշալոյսին պատերազմ են մղում Ասորեստանցիների դէմ, ապա և հին Պարսից, որոնց իշխանութեան տակն են ընկնում երկու դար շարունակ։ Դարեհ Վշտասպեանը պարծենում է Հայոց վրայ տարած յաղթանակներով, իսկ Քսերքսէսը Հայոց օգնական գունդը տանում է դէպի Թերմապիլն ու Սալամինը։ Հուսկ յետոյ Հայաստանին վիճակւում է Արևելքի բախտը, նուաճուած Մեծին Ալեքսանդրից և մտնում է հելլէն թագաւորութեանց ընտանիքի շարքը։ Հռովմայեցոց երևալը Ասիայում՝ Հայաստանը Հռովմի դէմ պատերազմ է սկսում, որ փոքր ընդհատումներով տևում է մինչև կայսրութեան վերջին ժամանակները։ Հայաստանին վիճակւում են «յաղթանակի ժամեր», երբ ինքն էլ աճում դառնում է կայսրութիւն [2]), սահման ունենալով Կասպից ծովն ու Պաղեստինէն։ Հայաստանն ունեցել է նաև անկման ծանր օրեր, երբ դառնում է հռովմէական մի սոսկ նահանգ, լեգատի վարչութեամբ (Տրոյանոսի ժամանակ, սակայն մի տարուց ոչ աւելի)։ Հայերը պատերազմում են Հռովմի լաւագոյն զօրավարների, այն է՝ Սուլլայի, Լուկուլլոսի, Պոմպէոսի, Անտոնիոսի, Կորբուլոնի, Մարկոս Աւրելիոսի դէմ։ Պատերազմը շարունակւում է Կայսրութեան երկու մասի բաժանուելուց յետոյ. բայց ապա Հայաստանը, ընդունելով քրիստոնէութիւնը և նեղուելով նորօք հաստատուած Նոր-Պարսից թագաւորութեան կողմից, հաւատարիմ դաշնակից է դառնում Արևելեան կայսրութեան։ Այս հաւատարմութեանը (Բիւզանդական) կայսրութիւնը պատասխանում է դաւաճանութեամբ (ըստ պարզ խոստովանութեան Ամմիանոս Մարկել-

[1]) Տես Մարգ. Երեմիայի գլ. ԾԱ. 27.«հրաւիրեցէք ի վերայ դորա զունդս պատուէր տուք յինէն Արարատեան թագաւորութեանցն». Մ. Շ.։

[2]) Ամֆիթէատրովը իւր գրքում մանրամասնօրէն որոշում է Մեծին Տիգրանի կայսրութեան սահմանները։ Մ. Շ.

լինոսի) և Հայաստանը բաժանւում է իր երկու հզօր հարևաններին՝ Բիւզանդիայի և Պարսկաստանի միջև։ Վերջանում է Հայաստանի հին պատմութիւնը և սկսւում է միջինը։

Թէպէտև Ա. Ամֆիթէատրովի գիրքը, շարունակում է Վ. Բրիւսովը, նուիրուած է միայն Հայաստանի հին պատմութեան, մենք, սակայն, կասենք մի քանի խօսք նաև նորա յետագայ վիճակի մասին, որ, եթէ ոչ աւելի, գէթ ոչ պակաս հետաքրքրական է պատմագրի համար։ Երկու Հայաստան, արևելեան և արևմտեան, մասնակցում են Բիւզանդիայի և Պարսկաստանի դարևոր պատերազմների բախտի բոլոր վճռական փոփոխութիւններին։

Յուստինիանոսի բարենորոգումները, Հերակլէս կայսեր արշաւանքները, աստուածաբանական վէճերը, Բիւզանդիայի գեղարուեստական զարգացումը—այս բոլորը արտացոլւում է Հայաստանի կեանքի վրայ։ Արաբացւոց տիրապետութիւնը միացնում է Հայաստանի երկու մասերը, իսկ խալիֆայութեան թուլութեան միջոցին—(IX դարուց) վերականգնում է անկախ Հայաստան Բագրատունեանց թագաւորութեան օրերին։ Երկու դար ինքնուրոյն զարգացումից յետոյ՝ Հայաստանը նորից ընկնում է կործանուած շնորհիւ Բիւզանդացւոց դաւադրութեան և Սելճուկ-Թիւրքերի արշաւանքների։ Սակայն աւերակներից կրկին վերականգնում է, կազմելով երկու թագաւորութիւն. մէկը հիւսիսում—աւատական (կախումն ունենալով հաւատակից (?) Վրաստանից) իշխանութիւն Զաքարեանց և հարաւում, Կիլիկիայում,—անկախ թագաւորութիւն Ռուբինեանց։ Երկայնաբազուկ (Զաքարեանց) իշխանների պետութիւնը ապրում է միջին դարուց սախական թագաւորութեանց գերդաստանի կեանքով։ Կիլիկիայի թագաւորութիւնը (Ռուբինեանց) սերտ կապւում է միջին դարուց արևմտեան Եւրոպայի հետ։ Կիլիկիայի վրայից անցնում են խաչակրաց արշաւանքները, Կիլիկեան թագաւորները իւրեանց պատիւն ստանում են պապից և սրբազան գերման-հռովմէական կայսրութեան կայսրից[1]). Կիլիկիան եռանդուն վաճառականութիւն է ձեռնարկում Արևմուտքի հետ, համակւում է նորա գաղափարներով, ընդունելով նորա գիտութիւնն ու գրականութիւնը։ Բայց վրայ են հասնում Լանկթամուրի արշաւանքների սոսկալի ճգնաժամը և յետոյ Օսմանլի-Տաճիկների տիրապետութիւնը։ Առաջաւոր Ասիայում ամենայն ինչ կործանւում է. մոնղոլական լուծի խաւարը ծածկում է առաջուայ կուլտուրական երկիրները. Հայերի համար սկսւում է ամենածանր փորձութիւնների դարագլուխը—երեք դար ստրկութիւն Տաճկաց և Պարսից հալածանքների տակ (XVI XVIII դ.)։ Միայն XIX դարում սկսւում է դանդաղ վերածնունդը շնորհիւ մեծ մասամբ Ռուսաց զէնքի յաջողութեան։ Լրումը կատարւում է արդէն մեր աչքերի առաջ և, երբ Ռուսաց զօրքերը նորանոր յաղթութիւններ են կատարում հին Վանի սահմաններում, ուր ապրում էին Հայերի նախահարքը,[2]) Ուրարտացիք, որոնց դէմ պատերազմ ունէր Ասորեստանը։

Մ. Շովրեան

(Շարունակութիւնը հետևեալով)

---

[1]) Լևոն II 1187—1219 թ. դառնում է առաջին թագաւորը Ռուբինեանց հարստութիւնից։ Մ. Շ.

[2]) Գիտութիւնը տակաւին ապացուցած չէ, որ ուրարտացիք հայոց նախահայրն են. ընդհակառակը կարելի է հաւանօրէն պնդել։ Վ. Բրիւսովի այս դարձուածքն անշուշտ պէտք է հասկանալ այն մտքով, որ ուրարտացիք հայութեան հետ ի մի ձուլուեցան, հետևաբար եթէ ոչ այժմեան բոլոր հայերի, գէթ շատերի նախորդներն ուրարտացի են եղել։

Խմբագր.

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ